# ԳԱՐՈՒՆԸ ԵԿԱՎ

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

Ձնծաղիկն ահա ձյան միջից ելավ,
Տեսավ օրն այնքան տաքուկ է ու լավ,
Տեսավ, որ արևն իր լույսն ու բարին
Փռել է առատ արար աշխարհին,
Եվ ասաց.— Բա ես ինչո՞ւ եմ մենակ,
Իսկ ու՞ր են հապա առու ու գետակ,
Ինչո՞ւ չեն հոսում սարում ու ձորում
Ու անուշ երգով ինձ չեն օրորում։
Լսեցին նրան առու ու գետակ,
Որ քնել էին լեռան ձյունի տակ.
Լսեցին նրան, ներքև հոսեցին
Եվ անուշ ձայնով այսպես խոսեցին.
— Ու՞ր են մանուշակն ու սիրի-սիրին,
Որ բուրում էին միշտ մեր ափերին,
Ու՞ր են ծաղիկներն այն անուշահոտ,
Եվ ու՞ր է, ու՞ր է կանաչը շաղոտ։
Լսեցին նրանց ծաղիկ ու կանաչ,
Դուրս եկան գարնան ջրին ընդառաջ.
Ելան մանուշակն ու սիրի-սիրին
Եվ առվի ափին բուրեցին լռին։
Ելան ծաղիկներն այն ոսկեթևիկ.
— Բայց ու՞ր է,— ասին,— ծիծառը սևիկ.
Նա, որ ճախրում էր կապույտ երկնքում
Ու միշտ մեզ համար երգեր էր երգում։
Լսեց ծիծեռնակն ու հեռու հեռվից
Թևերին տալով, նա եկավ նորից,
Նա եկավ, տեսավ բույնը նորոգված,
Աշխարհը ծաղկով, կանաչով զուգված,
Խոփերը խոնավ դաշտերն են հերկում,
Խշշում են ջրերն ու անուշ երգում։
Ու ինքն էլ սևիկ թևերը բացեց,
Երգեց ու երգով երկինք թևածեց։
Նրա հետևից սլացան թեթև
Արտուտիկները թուխ ու ոսկեթև,
Իսկ քարին նստած մի փոքրիկ կաքավ
Երգում էր անվերջ.
— Գարունը եկա՜վ...
Գարունը եկա՜վ...



Նկ. Վ. ՌՈՒԽԿՅԱՆԻ

№ 3 1960 թ.
ՄԱՐՏ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
32-ՐԴ ՏԱՐԻ





ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



# ՀԵՆՑ ԱՅՆՊԵՍ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Փողոցում երկու փոքրիկ տղա վիճում էին։ Նրանք ձեռքներին պայուսակներ ունեին. դպրոցից էին գալիս։ Դրանցից մեկը Գեղամն էր, դպրոցի ամենալավ լողորդը։ Գեղամը երգեցողությունից «5» ուներ, հայոց լեզվից՝ «4», պատմությունից՝ «3», թվաբանությունից՝ «2»։

Մյուսը Նիկողոսյանն էր, որին տանը Կոլյա էին ասում, իսկ դպրոցում՝ Նիկ։ Նիկը թվաբանությունից «5» ուներ, պատմությունից՝ «4», հայոց լեզվից՝ «3», իսկ երգեցողությունից՝ «2»։ Բացի այդ, Նիկը լողորդ չէր, ավելին, նա վախենում էր խեղդվել նույնիսկ մի ափսե ջրում։

Հիմա, որ արդեն գիտեք, թե ովքեր էին փողոցում վիճող տղաները, պատմեմ, թե ինչու էին վիճում։

Գեղամը զայրացած էր, բայց ոչ թե Նիկի վրա, այլ նրա մոր՝ ընկեր Լուսիկի։ Ընկեր Լուսիկը նրանց թվաբանության դասատուն էր։

Գեղամը կարծում էր, թե ընկեր Լուսիկը հավասար աչքով չի նայում աշակերտներին։ Ա՛յ, ինքը քառորդում մի քանի անգամ «3» էր ստացել, մի քանի անգամ՝ «2», ընկեր Լուսիկը ընդհանուր գնահատականը «2» էր նշանակել։ Այնինչ, Նիկը «չորս» էլ էր ունեցել, իսկ ընդհանուր գնահատականը «5» էր։

— Բա ինչու՞ է էգպես, — հարցրեց Գեղամը։

— Ախր — կմկմաց Նիկը։

— Ախր—մախր, իհարկե, քո մայրիկն է։

Նիկը Գեղամին ասաց.

— Ամոթ քեզ։

Գեղամը Նիկին ասաց.

— Ամոթ էլ, դեռ մի բան էլ ավելի։

Հետո Գեղամը ուրիշ խիստ բաներ ասաց, Նիկն էլ ասաց։ Նիկը պայուսակը բարձրացրեց, Գեղամը պայուսակը բարձրացրեց։ Բայց երկուսն էլ իրար հարվածելու ցանկություն չունեին։ Փողոցով անցնող մի կին ասաց.

— Չե՞ք ամաչում։

Նիկը պայուսակն իջեցրեց։ Գեղամը պայուսակն իջեցրեց։ Խռոված բաժանվեցին...

* *
*

Նոր քառորդում Նիկն ու Գեղամը իրար չէին նկատում։ Նիկը դարձյալ թվաբանությունից «5» էր ստանում, պատմությունից՝ «4», հայոց լեզվից՝ «3», երգեցողությունից՝ «2»։ Գեղամը դարձյալ երգեցողությունից «5» էր ստանում, հայոց լեզվից՝ «4», պատմությունից՝ «3», իսկ թվաբանությունից՝ «2»։ Ու Գեղամն էլի այն կարծիքին էր, որ ընկեր Լուսիկը աշակերտներին հավասար աչքով չի նայում։

Իսկ ընկեր Լուսիկը չգիտեր, որ Գեղամն այդ կարծիքին է։ Մի օր նա Գեղամին ասաց.

— Այսուհետև երեքշաբթի և ուրբաթ օրերը երեկոյան կգաս մեր տուն։

Առաջին երեքշաբթին անցավ, Գեղամը չգնաց, չգնաց նաև ուրբաթ օրը։ Շաբաթ օրն ընկեր Լուսիկը ինքը գնաց նրանց տուն և Գեղամին տարավ։

Նիկը սեղանի մոտ նստած երակ էր ուտում։

Ընկեր Լուսիկն ասաց.

— Նստիր այստեղ, երակ կկերեք, իսկ ես դեռ մի ժամվա գործ ունեմ։

Գնաց խոհանոց։

Նիկն ու Գեղամը մնացին սենյակում։ Գեղամը չնստեց, Նիկն էլ վեր կացավ։ Գեղամը նայեց Նիկին, Նիկը նայեց Գեղամին, հետո հայացքները շրջեցին։ Նորից Գեղամը նայեց Նիկին, Նիկը նայեց Գեղամին, հետո հայացքները շրջեցին։ Ձանձրացան։ Նիկը սուլեց, Գեղամն էլ սուլեց, հետո էլի ձանձրացան։ Վերջապես Գեղամն ասաց.

—Ասել ես, հա՞։

Նիկն ասաց.

—Քո արշինո՞վ ես չափում։

Գեղամն ասաց.

—Տեսնում ենք, է՜լի...

—Արան տեսեք, — քմծիծաղ տվեց Նիկը։

—Արա՞ն տեսեք, — քմծիծաղ տվեց Գեղամը։

Դարձյալ ձանձրացան, իսկ անլուծ խնդիրը մնաց սեղանի վրա։

* * *

Արդեն երկու ամիս էր, որ ընկեր Լուսիկը պարապում էր Գեղամի հետ։ Թվաբանությունը դժվար էր, Նիկն էլ հանկարծակի նման փշի նման տնկված էր աչքերի առաջ։ Նիկը ժպտում էր արհամարհանքով, արհամարհանքով սուլում էր, մինչև ընկեր Լուսիկը նրան վռնդում էր սենյակից։ Գեղամը թեթևացած շունչ էր քաշում ու լսում էր ավելի ուշադիր։

Դժվար էր։ Դժվար էր նաև ընկեր Լուսիկի համար։ Դպրոցի գործը շատ էր, տան գործը շատ էր, ու դեռ Գեղամն էլ ավելի... Մի օր էլ ընկեր Լուսիկն ասաց.

—Դու կարծես թե ընկերներից հասել ես, վաղվանից Կոլյայի հետ միասին կպարապեք։

Մյուս օրը Գեղամը չէր ուզում գնալ Նիկենց տուն, բայց գնաց։ Ընկեր Լուսիկը տանից դուրս եկավ, Նիկն ու Գեղամը մնացին մենակ։ Նիկը բերեց գրքերը, տետրակները, մատիտները, դրեց սեղանին։

— Այս խնդիրը գրիր, — ասաց Նիկն ու ինքն էլ խնդիրն արտագրեց։

Սկսեցին լուծել։ Հանկարծ Գեղամը կանգ առավ։ Նիկը գլուխը բարձրացրեց։ Գեղամն արագ-արագ սկսեց գրել։ Նիկն էլ սկսեց գրել։ Գեղամը նորից կանգ առավ ու գրածը ջնջեց։ Նիկն էլ կանգ առավ ու ասաց.

— Ցույց տուր։

— Ինքդ ցույց տուր։

— Ես լուծել եմ։

— Մեծ բան է, ա՛յ։

Նիկը ցույց տվեց իր լուծածը։

Գեղամը նայեց, կարդաց ու ասաց.

— Ես էլ հենց այդպես էի ուզում։

Հետո Գեղամն էլ լուծեց։

Գեղամը հիմա թվաբանությունից «3» էր ստանում։ Հասկանալի է, միանգամից գերազանցիկ չես դառնա։

Նիկը մոռացել էր փողոցի ընդհարումը։ Գեղամն էլ էր ուզում մոռանալ, բայց չկարողացավ։ Մի օր Նիկին ասաց.

— Նիկ, ա՛յ Նիկ։

— Հը՞։

— Դու ընկեր Լուսիկին սիրու՞մ ես։

Նիկը զարմացավ։

— Ա՜յ քեզ բան։

— Չէ՛, — բացատրեց Գեղամը, — ոչ թե որպես մայրիկ, հասկանու՞մ ես, այլ հենց այնպես։

— Սիրում եմ, — ասաց Նիկը։

— Ես էլ եմ սիրում, — ասաց Գեղամը։

Նիկն ուրախացավ։ Գեղամն էլ ուրախացավ։ Միասին սուլեցին՝ ուրախացան, հեռուստացույցով կինոնկար նայեցին, էլի ուրախացան։ Ուշ երեկոյան բաժանվեցին։ Տուն գնալիս Գեղամը



Նկ. Ա. ԲՈՅԱՋՅԱՆԻ

հիշեց, որ մոռացել են թվաբանության խնդիրները վճռել, բայց, համենայնդեպս, ուրախ էր. «Լավը, հավանաբար, ընկեր Լուսիկն ինձ դաս չի հարցնի» — մտածեց նա։

Նիկը պառկեց քնելու և հանկարծ հիշեց, որ մոռացել են թվաբանության խնդիրները վճռել, բայց, համենայնդեպս, ուրախ էր։ «Լավը, հավանաբար, մայրիկը ինձ դաս չի հարցնի», — մտածեց նա։

Հաջորդ օրը ընկեր Լուսիկը Գեղամին դաս հարցրեց և նշանակեց «2», Նիկին դաս հարցրեց ու նշանակեց «2»։

Դասամիջոցին միջանցքում իրար գտան։ Երկուսն էլ տխուր դեմք ունեին, բայց հանկարծ Գեղամը ժպտաց, հանկարծ ժպտաց նաև Նիկը։ Գեղամի ժպիտն ասում էր. «2»-ը ոչինչ, գլխավորն այն է, որ ես մայրիկիդ սիրում եմ և դու հավատում ես։ Նիկի ժպիտը ասում էր. «2»-ը ոչինչ, գլխավորն այն է, որ դու մայրիկիս սիրում ես, ու ես էլ նրան սիրում եմ ոչ միայն որպես մայրիկ, այլ նաև հենց այնպես...

# ՄԱՅՐԻԿԻՍ

ՄԱՐԻԱ ՊՈԶՆԱՆՍԿԱ
(ուկրաինական գրող)

Քնի՛ր, մայրիկ ջան, գործից՝ես դարձել,
Քո անկողինը ես ինքս եմ բացել.
Հոգնել ես սաստիկ դու աշխատանքում,
Կհսկեմ, որ լուռ լինի սենյակում.
Փիսիկին անգամ չեմ թողնի մռռա,
Թե որ խանգարի՝ դուրս կանեմ նրան։

Քնի՛ր, իմ մայրիկ, ու... տես երազում...
Արդեն ծփում են արտերը հասուն,
Հովտում էլ վուշն է քեզ նայում սիրով,
Կապույտ, անհամար իր աչիկներով...
Արտերի միջով քայլում ես զվարթ,
Քնիր իմ մայրիկ, քնի՛ր դու հանդարտ։

Դու քնիր, իսկ ես կմնամ արթուն,
Կասեղնագործեմ գլխաշոր նախշուն,
Կհյուսեմ բալեր խոշոր ու ալվան,
Ճիշտ մեր պարտեզի բալերի նման,
Բալերի հետ էլ մի-մի հատ սալոր...
Քնիր իմ մայրիկ, քնի՛ր բախտավոր։

Եզրերին կանաչ թելով մետաքսի
Կգործեմ հատ-հատ տերևներ դաղձի։
Այն տերևներից փոքրիկ ու քնքուշ,
Որ մեր դաշտը բուրում են անուշ.
Անկյուններում էլ կգործեմ վարդեր...
Չեմ քնի, մինչև գործս չավարտեմ։

Իսկ երբ որ բացվի առավոտը լույս,
Քեզ կմոտենամ, կարթնացնեմ զգույշ.
«Մայրիկ ջան,—կասեմ,—քո տոնն է այսօր,
Նվիրում եմ քեզ մի լավ գլխաշոր...»
Իսկ հիմա քնի՛ր խաղաղ, երջանիկ,
Իմ բարի՛, բարի՛, անուշիկ մայրիկ։

Թարգմ՝ Գ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

Նկ. Ա. ԳԱՐՈՒՆԱԿՅԱՆԻ



# ԵՐՋԱՆԿՈՒԹՅԱՆ ԳԱՂՏՆԻՔԸ

ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. Ն. ԹՈԹԱՆՋՅԱՆԻ

— Հայրիկ, դու տասնչորս տարեկան եղե՞լ ես...

Բժիշկ Մարությանը մի պահ զարմացավ որդու այս տարօրինակ հարցից, ապա ժպտալով պատասխանեց.

Պարզ է, միանգամից քառասուն տարեկան չեմ ծնվել։

Գարիկը, որ չէր կարողացել հարմար բառեր գտնել իր մտքերն արտահայտելու համար, ստիպված լռեց. լռեց ու այնպիսի հայացքով նայեց հորը, որ կարծես ցանկանում էր ասել. «Է՜հ, հայրիկ, դու ծիծաղում ես, իսկ ես բոլորովին էլ այդ չէի ուզում հարցնել»։

Նրանք նստեցին սեղանի շուրջը։ Հին տարվա վերջին րոպեներն էին։ Ուր որ էր ժամացույցի սլաքները կկանգնեին 12 թվացույցի վրա, և նոր տարին ուրախ ծիծաղով ներս կմտներ փակ լուսամուտից։

Բժիշկ Մարությանը միացրեց ռադիո-ընդունիչը։ Երաժշտությունը դուրս հորդեց ու լցվեց սենյակը։ Նրբին հնչյունները թրթռացին սենյակի անկյուններում։

Հայրի՛կ...

— Ի՞նչ է, Գարի՛կ։

— Հայրիկ, գիտե՞ս ինչ։

— Ի՞նչ։

— Դե՛, ինչպես ասեմ, է՜հ... Մարդիկ ինչո՞ւ են այդպես, մի տեսակ...

— Ի՞նչ տեսակ, տղաս։

— Մի տեսակ, է՛լի... Ա՛յ, օրինակի համար, ի՞նչ կանեիր դու, հայրիկ, եթե փորձեիր մեկին մի լավ բան անել, իսկ նա չհասկանար ու դրա փոխարեն... Ասենք դրա փոխարեն շատ վատ բան աներ քեզ։

— Ինձ էլ է պատահել, տղա՛ս, — ասաց նա գրրկելով Գարիկի ուսերը։ — Պատահել է, որ չհասկանալով ինձ էլ շատ են դառնացրել։ Չեն հասկացել ու դառնացրել են։ Բայց ես դարձյալ լավ բանով եմ պատասխանել նրանց։ Այդպես ավելի երջանիկ եմ եղել։

— Իսկ ի՞նչ բան է երջանկությունը, հայրիկ։

Ինչպե՛ս ասել, տղաս։ Ա՛յ, օրինակի համար, երբ դու...

Հանկարծ դարբասը ուժգին բախեցին։ Մարությանը ոտքի կանգնեց։ Մինչ նա ուսերին կգցեր վերարկուն, Գարիկը արագ դուրս թռավ։

Մեկը անհանգիստ ու տագնապով թակում էր դարբասը։

Գարիկը ետ գցեց երկաթե սողնակը։

Նրա առջև, բրդոտ քուրքը հագին կանգնել էր ալեխառն մորուքով մի ծերունի։

— Բալա ջան, բժիշկը տա՞նն է... — դողդողացող ձայնով հարցրեց նա։

— Տանն է, պապի։ Ներս արի։

Ծերունին անվստահ քայլերով բակ մտավ։ Նկատելով աստիճաններից ցած իջնող Մարությանին, նա հուզված ընդառաջ գնաց։

— Ապրիդ մատաղ, բժիշկ ջան։ Խեղճ քյորփես ձեռքից գնում է, հասիր...

— Ի՞նչ է պատահել, հայրիկ։

— Ինչ իմանամ, որդի։ Էս երեք օր է թոռանս բկերը եկել էին։ Դե մենք էլ մեր կարճ խելքով մտածեցինք, թե մրսել է, կանցնի։ Համա էս իրիկուն տաքությունը ավելի բարձրացավ ու երեխան սկսեց խոխռալ։

Մարությանը արագ բարձրացավ վերև ու քիչ հետո դուրս եկավ տանից բժշկական փոքրիկ ճամպրուկը ձեռքին։

— Գնա՛նք։

Դարբասից քիչ հեռու մի մեծ սահնակ էր կանգնած։ Սահնակին լծված զույգ ձիերը ոտքերով դոփում էին ձնոտ գետինը ու փնչացնում։ Նրանց վրա գցված հաստ թաղիքի տակից առատ գոլորշի էր բարձրանում։ Դա նշանակում էր, որ ձիերը բավական երկար ճանապարհ էին կտրել։

— Էդ յափնջին վրեդ գցի, չմրսես,— ասաց ծերունին ու հետո ավելացրեց։ — Ներող կլինես, մատա՛ղ...

— Ինչի՞ համար,— զարմացած հարցրեց Մարությանը՝ տեղավորվելով սահնակի մեջ։

— Նրա համար, որ էս ազիզ օրը հարամ արինք։

— Դու, ավելի լավ է, քշիր, չուշանանք։

— Ծերունին մտրակեց ձիերին։ Նրանք փնչալով պոկվեցին տեղերից ու նետվեցին առաջ։

Գարիկը ծածկեց դարբասը և մտասույզ բարձրացավ աստիճաններով։

Ձիերի զնգզնգացող բոժոժների ձայնը դեռ երկար ժամանակ լսվում էր գյուղի ծայրից։

* * *

Հարթ, փխրուն ձյան վրայով սահնակը առաջ է սլանում։ Սահնակի տակից արագ ետ փախչող գծերը, կծիկից քանդվող թելի նման երկարում և ոլոր-մոլոր կորչում են խավարի մեջ։ Քամին վընգոցով, հակառակ ուղղությամբ արշավում է արծաթափայլ հարթ դաշտով՝ լիզելով սառն ու փխրուն ձյունափոշին։

— Քանի՞ տարեկան է,— համարյա բղավելով հարցնում է Մարությանը։

Քամին խլում է նրա բառերը և խառնելով ձյունափոշուն, քշում, տանում է հեռո՜ւ, հեռո՜ւ...

— Ի՞նչ։

— Ասում եմ թոռդ քանի՞ տարեկան է։

Ծերունու շրթունքները դողում են։

— Ութը տարեկան, մատա՛ղ։

Մարությանի սիրտը կուչ է գալիս կրծքի տակ։ Քամին կարծես բերում է իր հետ տանջվող երեխայի թույլ խոխռոցն ու ծանր շնչառությունը։ Ահա, խավարի միջից այդ պահին դեպի իրեն են պարզվում մի զույգ թույլ ու վտիտ ձեռքեր, որոնք անուժ, անօգնական, մաքառում են մահվան դեմ և կյանք են աղերսում։ Իսկ կյանքը... Ո՞վ գիտի, գուցե իզուր են ծերունու այդ անհանգիստ մաքառումները, իզուր են ձիերի փնչոցներն ու նրանց խելագար վազքը... Բայց ոչ, հարկավոր է շտապել։ Շտապել հենց նրա համար, որ կյանքը չի սպասում։ Եվ նրան թվաց, թե իրենք չափից ավելի դանդաղ են ընթանում։ Դանդաղ, ինչպես լուսնի այս սառած սկավառակը, որ հանդարտ գլորվում է երկնքի կապույտ անդունդի վրայով։

— Արագ քշիր, հայրիկ,— անհանգիստ բղավում է նա։

Ծերունու դեմքի վրայով թեթևակի սահում է հույսի թույլ ժպիտը։

«Էդ լավ է, որ անհանգստանում է։ Բժիշկը, որ անհանգստացավ, ուրեմն աստծո փրկության լույսը մոտ է...» մտածում է նա և կարծես ուժ ստանալով սկսում է ոգևորված մտրակել, առանց այն էլ քամու նման սուրացող ձիերին։



Մեքենան դուրս է գալիս հարթ դաշտից և ծորաքերանի զառիթափ ճանապարհով արագ սահում ներքև։ Հեռվում վերջապես փայլփլում են գյուղի լույսերը։

Ահա և գյուղը։

Ջիերը ծանր փնչալով կանգ են առնում մի փոքրիկ տան առաջ։

...Տանեցիք ու հարևանները, որ մինչ այդ տագնապով շրջապատել էին հիվանդի մահճակալը, բժշկի ներս մտնելուն պես, ակնածանքով մի կողմ քաշվեցին։ Ոչ ոք չխոսեց... Կապարի նման ծանր լռությունը կախվել էր գերանածածկ առաստաղից։ Հիվանդ երեխայի օրհասական խռխռոցները ու պատից կախված հին ժամացույցի խուլ տկտկոցները էին միայն, որ խախտում էին տագնապով ու սպասումով լի այդ լռությունը։

Անկողնում պառկած փոքրիկ աղջիկը շնչարգելությունից շարունակ գալարվում էր ու ջղաձգորեն ետ մղում վրան գցված վերմակը։

Մարությանը մի կողմ դրեց ձեռքի փոքրիկ ճամպրուկն ու շտապով մոտեցավ հիվանդին։

Աղջիկը դանդաղ բաց արեց ուռած կոպերը ու մշուշված հայացքով նայեց նրան։ Բժիշկը զգուշությամբ զննեց երեխայի կոկորդը։ Աղջիկը ցավատանջ տնքաց ու սկսեց լաց լինել։

— Խնդրում եմ բաց արեք լուսամուտները և բոլորդ դուրս գնացեք։



Հավաքվածները լուռ ու գլխահակ դուրս ելան։

Մի քանի րոպե հետո լսվեց ականջ ծակող մի ճիչ, և հիվանդի հարազատները տագնապով ներս վազեցին։

* * *

Գարիկը անհանգիստ շրջվեց անկողնում։ Շրջվեց ու նայեց ժամացույցին։ Արդեն ժամը մեկն անց է, իսկ հայրը դեռ չկա։ Մայրը գլուխը հենած ուտելիքներով լի սեղանին, ննջում է։ Ասենք, ավելի ճիշտ, սպասում է։ Նա այդպես է... Նա միշտ սպասում է։

Մի ժամ առաջ գյուղացիք այստեղ էին։ Եկել էին շնորհավորելու բժշկի Նոր տարին, բայց նա չկար։ Շնորհավորեցին, հետո... երգեցին, ուրախացրին Գարիկի մորը ու գնացին... Իսկ մայրը դեռ սպասում է։ Գարիկն էլ է սպասում։

Հանկարծ դրսում պատուհանները ճռճռացին։ Մայրը ոտքի թռավ ու նետվեց դեպի դուռը։

Բժիշկը ներս մտավ։ Ցած դրեց ձեռքի փոքրիկ ճամպրուկը։ Հանեց վերարկուն և ձեռքերն իրար շփելով մոտեցավ սեղանին... Լցրեց կոնյակը բաժակի մեջ։ Հետո միացրեց ռադիո-ընդունիչը ու խորը շունչ քաշեց։

Գարիկը անհանգիստ նայում է նրան։ Իսկ ռադիո-ընդունիչը դեռ նվագում է...

— Հայրի՛կ։

Մարությանը բարձրացրեց գլուխը ու ժպտաց։ Ժպտաց, իսկ դա նշանակում է, որ ամեն ինչ կարգին է, որ հիվանդը փրկվեց։

Փրկվեց... Մեկն էլ փրկվեց։ Նոր տարվա եկող այս առավոտ նա բաց կանի իր մշուշված աչքերը և պայծառ հայացքով կնայի կյանքին ու մարդկանց։

Եվ Գարիկի ականջներում կրկին զրնգացին ծերունու խոսքերը.

«— Ներող կլինես, մատաղ...

— Ինչի՞ համար։

Նրա համար, որ քո էս ազիզ օրը հարամ արինք»։

Բայց հայրիկը թողեց ամեն ինչ ու գնաց։ Գուցե հենց դա է երջանկության գաղտնիքը, որ նա չըհասցրեց բացատրել իրեն։ Թողեց ամեն ինչ ու գնաց։ Գնաց, որովհետև չէր կարող չգնալ։ Գնաց, որովհետև մարդ էր գնում կյանքից։ Ուրեմն հարկավոր էր հասնել, օգնել։

Իսկ մարդիկ այնքա՜ն կարիք են զգում օգնության...

# ՄԻՇՏ ՄԻԱՍԻՆ

Բ. ՄԻՐԱՔՅԱՆ

Նկ. Ֆ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ԵՐՐՈՐԴ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ

### ԱՌԱՋԻՆ ՊԱՏԿԵՐ

*Վարագույրի առաջ Դավիթը քայլում է մեծ դժվարությամբ՝ փայտին ու Սարոյին հենված:*

ԴԱՎԻԹ.— Մի քիչ հանգստանամ: *(Նստում է):* Ոտքս շատ է ուռել:

ՍԱՐՈ.— Հիմա մերոնք իրար են խառնվել, դեսուդեն են վազում: Ինչե՞ր ասես, որ չի անցնում նրանց մտքով: *(Հանում է ուտելիքը և սկսում է ուտել):*

ԴԱՎԻԹ.— Էլի՞...

ՍԱՐՈ.— Բա սոված փորով քեզ նման ծանրություն քաշ տալը հե՞շտ է:

ԴԱՎԻԹ.— Դու օրվա բոլոր ժամերին էլ ուտում ես, բայց դեմքից նայողը կկարծի, թե կյանքումդ կուշտ փորով հաց չես կերել:

ՍԱՐՈ.— Երանի աշակերտների անելիքները բաժանեին ըստ ընդունակությունների:

ԴԱՎԻԹ.— Այսի՞նքն...

ՍԱՐՈ.— Օրինակ, վերցնենք քեզ: Դու ընդունակ սովորող ես: Ուրեմն, թող քեզ պարտադրեն, որ դու հա՛ սովորես: Ես ընդունակ եմ ուտելու մեջ, ինձ էլ թող տան՝ անընդհատ կե՛ր: Ափսո՜ս, որ պիոներական աստիճանների մեջ ուտելու մասին ոչինչ չեն գրել:

ԴԱՎԻԹ.— *(Մտածում է):* Սրամիտ էր: *(Պաուզա):* Մեր դրությունը լավ չի, գիտե՞ս: Բոլորովին մթնել է, էլ ո՛չ շավիղ է երևում, ոչ քար, ո՛չ էլ փոս:

ՍԱՐՈ.— Բայց մե՞նք դեպի տու՞ն ենք շարժվում, թե դեպի լեռները:

ԴԱՎԻԹ.— Իմ հաշվով ճիշտ ենք շարժվում:

ՍԱՐՈ.— Իսկ դու կողմնացույցին հարցրու...

ԴԱՎԻԹ.— Կողմնացույցը մոռացել ենք տանը:

ՍԱՐՈ.— Հապա ի՞նչ անենք:

ԴԱՎԻԹ.— Կարելի էր կողմնորոշվել լուսնով, աստղերով, բայց այնպես է ամպել, որ ոչ լուսինն է երևում, ոչ՝ աստղերը:

ՍԱՐՈ.— Ուրիշ է՛լ ինչո՞վ կարելի էր ուղղությունը որոշել:

ԴԱՎԻԹ.— Որոշ առարկաներով, բայց դրանց մասին ես չգիտեմ:

ՍԱՐՈ.— Բա հա գլուխդ ես գովում, թե ես մե՛նակ, առանց օգնի ամեն ինչ գիտեմ, ամեն ինչ կանեմ, դե արա է՛... *(Պաուզա):* Լավ, քիթդ մի կախի: Ես հենց էնպես, տեղն եկավ, ասացի: Դե քանի ժամանակ կա, շարժվենք: *(Բարձրացնում է):*

ԴԱՎԻԹ.— Օհո՜... Բոլորովին չեմ կարողանում շարժվել:

ՍԱՐՈ.— Ամրացի՛ր: Հիշիր Մերեսևին և հավաքիր ուժերդ: *(Դժվարությամբ հեռանում են):*

### ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԿԵՐ

*(Երկրորդ գործողության տեսարանը: Երևում են Դավիթն ու Սարոն):*

ԴԱՎԻԹ.— Ուր որ է անձրև կգա: *(Կայծակը փայլատակում է):*

ՍԱՐՈ.— *(Մի բան կասկածելով):* Մի րոպե նստիր: *(Ուշադրությամբ զննում է շրջակայքը):* Տեսա՞ր ինչ եղավ:

ԴԱՎԻԹ.— Ի՞նչ:

ՍԱՐՈ.— Մեր տանջանքն իզուր անցավ:

ԴԱՎԻԹ.— Ինչու՞

ՍԱՐՈ.— Ջրի նման գնացինք, ավազի նման մնացինք: Մենք պտտվեցինք, պտտվեցինք, նորից եկանք նույն տեղը: Ահա սա էլ քո պարանը:

ԴԱՎԻԹ.— Բա ես կարծում էի, թե ճիշտ ենք շարժվում:

ՍԱՐՈ.— Ա՜խ, իսկ ես քեզ այնպես էի հավատում, այնպե՜ս... կարծում էի դու ամեն բան գիտես: *(Մտածում է):* Ի՞նչ անենք:

ԴԱՎԻԹ.— Ամենից առաջ մտածենք անձրևից պաշտպանվելու մասին: Այն քերծը, որն ինձ դժբախտացրեց, մեզ կպաշտպանի անձրևից: Օգնիր, գնանք քերծի տակ: Այսպե՛ս: Այժմ պետք է կրակ անել:

ՍԱՐՈ.— Կրա՞կ... Խոմ չենք ձմեռելու այստեղ:

ԴԱՎԻԹ.— Ձմեռելը. չենք ձմեռելու, բայց գիշերելու ենք:

ՍԱՐՈ.— Գիշերե՞լ... Դրսու՞մ...

ԴԱՎԻԹ.— Ուզենք-չուզենք:

ՍԱՐՈ.— Ես չեմ մնա... Ես վախենում եմ:

ԴԱՎԻԹ.— Ինչի՞ց ես վախենում:

ՍԱՐՈ.— Գայլերից, վագրերից, կոկորդիլոսներից:

*Սկիզբը տե՛ս «Պիոներ», № 2*

ԴԱՎԻԹ.— Հիմա՞ր, վագրեր ու կոկորդիլոսներ այստեղ չեն լինում, իսկ գայլը տարվա այս ժամանակ մարդու չի մոտենա: Բացի այդ, չէ՞ որ մենք կրակ կանենք, իսկ գայլը կրակից շատ է վախենում:

ՍԱՐՈ.— Ճիշտ որ: Դու ես փայտ հավաքեմ: *(Կայծակը փայլատակում է)*: Ժամանակին է լուսավորում, որ ես փայտերը տեսնեմ: *(Հավաքածը հանձնում է Դավթին)*: Վատիր, մինչև որ ես էլի հավաքեմ: *(Դավիթը կրակ է անում: Սարոն բերում է փայտի պաշարը: Կայծակ, ամպերի որոտ: Սարոն հպվում է Դավթին)*: Ես վախենում եմ:

ԴԱՎԻԹ.— Պի՛նդ կաց: Հիշիր Մերեսևին:

ՍԱՐՈ.— «Մերեսևին»...Մերեսևն ատրճանակ ուներ, նա մեծ էր, օդաչու... Իսկ մե՞նք:

ԴԱՎԻԹ.— Բայց Մերեսևը մենակ էր, իսկ մենք երկուսով ենք:

ՍԱՐՈ.— Բա որ ամբողջ օղակն այստեղ լիներ, ինչքա՜ն լավ կլիներ: Մենք քեզ հերթով կբարձրացնեինք և կամաց-կամաց տուն կտանեինք:

ԴԱՎԻԹ.— Օղակավարն աղջիկ, Անահիտը՝ աղջիկ: Դրանք ի՞նչ ուժ ունեն, որ ինձ բարձրացնեն:

ՍԱՐՈ.— Բա Ռուբիկը, Հենրիկը, Վարդանը:

ԴԱՎԻԹ.— Վարդանը չի բարձրացնի: Նա սև գործ անել չի սիրում: Նա ուզում է միայն հրամայել:

ՍԱՐՈ.— Ուրեմն՝ իսկ և իսկ քեզ նման:

ԴԱՎԻԹ.— Ես տեղն եկած ժամանակ գործ էլ եմ անում: *(Լռություն)*: Անձրևը դադարեց:

ՍԱՐՈ.— Ասե՞մ ինչու ես հեռու փախչում օղակից: Նրա համար, որ օղակավարը դու չես:

ԴԱՎԻԹ.— Ո՛չ, օղակավարը աղջիկ է, դրա համար:

ՍԱՐՈ.— Եթե օղակավարը Վարդանը լինե՞ր...

ԴԱՎԻԹ.— Վարդանից ի՞նչ օղակավար, երբ նա միայն հրամայել գիտե:

ՍԱՐՈ.— Իսկ եթե կամ Հենրիկը, կամ Ռուբիկը լինեի՞ն:

ԴԱՎԻԹ.— Նրանք ու՞ր, օղակավարությունն ու՞ր:

ՍԱՐՈ.— Սպասիր՝ *(Մատների վրա հաշվում է)*: Նինան ու Անահիտը աղջիկ են, միայն հրամայել գիտեն, Ռուբիկից ու Հենրիկից օղակավար չի ստացվի, եթե սրանց բոլորին հանենք, կմնաս մենակ դու:

ԴԱՎԻԹ.— Օղակավարը խաղեր, մրցումներ, արշավներ պետք է կարողանա կազմակերպել:

ՍԱՐՈ.— Այսօրվա նման:

ԴԱՎԻԹ.— Այսօր դեպք պատահեց: Ու՛մ հետ դժբախտություն չի պատահում: Հետո, ես որ օղակավար լինեի, բոլորս միասին կլինեինք:

ՍԱՐՈ.— Ա՛յ, շատ ապրես, միասին կլինեինք: Մի՛շտ միասի՛ն: Ես էլ դա եմ ասում, որ եթե օղակն այստեղ լիներ, մեկին դժբախտություն պատահելիս, մյուսները կօգնեին: *(Լռում են)*: Այս ի՞նչ ձայն էր:

ԴԱՎԻԹ.— Ի՞նչ ձայն:

ՍԱՐՈ.— Ես ձայն լսեցի:

ԴԱՎԻԹ.— Վախկոտի ականջները սուր են լինում:

ՍԱՐՈ.— Ես եմ վախկոտը:

ԴԱՎԻԹ.— Այո:

ՍԱՐՈ.— Հիմա ո՞նց ես, քեզ մենակ թողնեմ այստեղ ու գնամ տուն:

ԴԱՎԻԹ.— Սիրտ չես անի, կվախենաս:

ՍԱՐՈ.— Տե՛ս, Դավիթ, մի բարկացնի, թե չէ կգնամ հա՜:

ԴԱՎԻԹ.— Թե դու թիկնապահ Սարոն ես, ես քեզ լավ գիտեմ:

ՍԱՐՈ.— Ուրեմն՝ ես վախկո՞տ եմ...Լավ: Դե մնաս բարով:

ԴԱՎԻԹ.— Ճանապարհը կկորցնես:

ՍԱՐՈ.— Չեմ կորցնի: Եթե կորցնեմ էլ, գոնե կապացուցեմ, որ ես վախկոտ չեմ: *(Գնում է, քիչ անց վերադառնում)*:

ԴԱՎԻԹ.— Ինչի՞ եկար:

ՍԱՐՈ.— Քեզ համար փայտ բերեցի: Խոմ չե՞ս սառչելու: *(Փայտը ցած է դնում)*: Ես գնացի: *(Գնում է ու ետ նայում)*: Ես գնացի *(Գնում է)*:

ԴԱՎԻԹ.— *(Ինչ-որ ձայնից սթափվում է և ուշադրությունը լարում)*: Կարծես ձայն լսեցի *(Պատուզա)*: Չէ, ինձ թվաց միայն: *(Սարոն ետ է գալիս)*: Ինչի՞ եկար:

ՍԱՐՈ.— Ա՛ռ: *(Պայուսակը հանում է ուսից և հանձնում)*: Սոված կլինես, կե՛ր: *(Մնում է կանգնած)*:

ԴԱՎԻԹ.— Փայտ բերեցի՞ր: Ուտելիք բերեցի՞ր... Շա՛տ ապրես, շնորհակալ եմ: Այժմ կարող ես գնալ:

ՍԱՐՈ.— Ես որոշեցի չգնալ:



ԴԱՎԻԹ.— Տեսա՞ր, որ ասում եմ վախկոտ ես, ճի՞շտ է:

ՍԱՐՈ.— Ոչ թե վախկոտ եմ, այլ հավատարիմ ընկեր: Ես ո՞նց թողնեմ քեզ այս վիճակում: Դու հասկանու՞մ ես, թե դա ինչ է:

ԴԱՎԻԹ.— Դավաճանություն:

ՍԱՐՈ.— Ես հայրենասեր եմ և չեմ ուզում դավաճան լինել:

ԴԱՎԻԹ.— Նստիր կողքիս: Մեջք-մեջքի կտանք ու կտաքանանք: Տարի հո չէ. գարնանային գիշեր է, մեկ էլ տեսար անցավ, ու լույսը բացվեց: Մի քիչ էլ փայտ ավելացնենք կրակին: *(Երկուսով էլ քուն են մտնում: Բեմը մթնում է: Երբ բեմը նորից լուսավորվում է, Դավիթը շարժվում է դեպի աջ: Նրա առաջը կտրում է մի գայլ: Դավիթը հանում է ատրճանակը ու կրակում)*: Օգնեցե՜ք... գայլը: *(Գալիս է Նինան և շարժվում դեպի աջ կողմը, որտեղից երևացել էր գայլը)*: Ինչպե՞ս ես համարձակվում... Հեռացիր իսկույն: *(Գայլը փախչում է: Նինան հեռանում է)*: Նինա, մի՛ գնա... Ի՞նչ եղար, Նինա: *(Երևում է մի վագրի գլուխ: Դավիթը գետնից փայտ է վերցնում և սկսում է նրանով պաշտպանվել: Վագրը մռնչալով մոտենում է նրան: Դավիթը ետ-ետ գնալով գոռում է)*: Օգնեցե՜ք... վագրը... օգնեցե՜ք: *(Գալիս է Վարդանը՝ ատրճանակը ձեռքին)*: Մի վախենա, Դավիթ, ես այստեղ եմ: *(Կրակում է վագրի վրա, վագրն անհայտանում է, Վարդանը՝ նույնպես)*: Վարդա՛ն, մի՛ գնա, վախենում եմ: Նինա՛, դու ու՞ր ես... օգնեցե՜ք... հե՜յ... *(Բեմը մթնում է, երբ լուսավորվում է, թիկն տված Դավիթը վեր է թռչում ու վախեցած նայում չորս կողմը)*: Սարսափելի երազ տեսա: Վախից քրտնել եմ: Պետք է արթուն մնալ: Լավ է, որ Սարոն չզարթնեց



թե չէ կծիծաղեր վրաս: *(Դեպի դահլիճը)*: Վա՜յ մենակ մարդուն: *(Լսում է լռությունը)*: Թվա՞ց, թե իսկապես ձայն լսեցի... մարդկային ձայն: Սարո, վե՛ր կաց, Սարո, ի՞նչ խորն ես քնել: *(Մի կերպ արթնացնում է)*:

ՍԱՐՈ.— *(Քնաթաթախ)* Հա՜... ի՞նչ... չէ... չեմ ծամում: Հը՞... *(Նայում է Դավթին)*: Ի՞նչ է պատահել:

ԴԱՎԻԹ.— Դարձյալ նույն ձայնը: Սարո ջան, մեզ են կանչում:

ՍԱՐՈ.— Հիմա էլ ինձ կանչեցին: *(Ինքն է կանչում)*: Էյ, հեյ... հե՜յ... *(Լարված սպասում են)*:

ԴԱՎԻԹ.— Մերոնք են, մերոնք. մեզ են փնտրում *(Սարոյին)* մի վառվող փայտ վերցրու բարձրացրիր վերև և թափահարիր:

ՍԱՐՈ.— Ճիշտ է, ճիշտ: *(Վառվող փայտը ձեռքին երևում է բլրի վրա)*: Այստեղ ենք հե՜յ... Եկեք հե՜յ... Նրանք լապտերներ ունեն, ես տեսնում եմ նրանց շարժումները: *(Սարոն ցած է իջնում)*: Ես տեսա նրանց, նրանք մոտ են, գնամ նրանց ընդառաջ: *(Կանչելով գնում է)*:

ԴԱՎԻԹ.— Էյ...հե՜յ...Այստեղ եմ, է՜յ...Այս կողմը եկեք: *(Լսվում է մի ձայն՝)* «Գալի՞ս ենք» գալիս են... քեռիս, հորեղբայրս *(Ձայնի մոտիկից)* «Դավի՜թ, գալիս ե՞նք, եկա՜նք»: *(Գրպանի լապտերը ձեռքին, շնչակտուր ներս է ընկնում Վարդանը)*:

ՎԱՐԴԱՆ.— Դավի՛թ, դու ո՞ղջ ես, առողջ:

ԴԱՎԻԹ.— Վարդա՛ն...դու՞... *(Գրկախառնվում են: Գալիս են Սարոն, Ռուբիկը, Հենրիկը, Նինան, Անահիտը)*:

ՆԻՆԱ.— Ահա թե որտեղ եք տուն ու տեղ դրել:

ՍԱՐՈ.— Դրա հետ մի քիչ զգույշ եղեք: Ես ձեզ չասացի՞:

ՎԱՐԴԱՆ.— Իսկապես: Չէ՞ որ ոտքը ջարդված է: Ապա մի ցույց տուր: Ցավու՞մ է: Իսկ այստե՞ղ: Շա՞տ է ցավում: Նինա, ապա մի դու տես:

ՆԻՆԱ.— Ապա այսպես... *(Դավիթը զսպում է իրեն)*: Իսկ այսպես... Սա ջարդվածք չէ:

ՎԱՐԴԱՆ.— Հոդախախտու՞մ է:

ՆԻՆԱ.— Իսկական հոդախախտում: Չմտածես, երկու-երեք շաբաթից հետո առաջվա նման կլինես:

ԴԱՎԻԹ.— Ուրեմն դասերից ետ կմնամ:

ՆԻՆԱ.— Չենք թողնի, որ ետ մնաս: Ամեն օր քեզ կօգնենք, որ դասերը պատրաստես:

ՎԱՐԴԱՆ.— Դե, դուք առաջին օգնությունը ցույց տվեք, իսկ մենք պատգարակ շինենք: *(Տղաները դուրս են գնում)*:

ՆԻՆԱ.— Մի՞թե դու չէիր կարող ինքդ քեզ առաջին օգնությունը ցույց տալ: Անահիտ, դեղապայուսակը տուր: *(Կապում են)*: Չէ՞ որ մեզանից այդ է պահանջվում: *(Վիրակապն ավարտելով)*: Այսպես հանգիստ կլինի:

ԴԱՎԻԹ. — Իսկ դուք ի՞նչ իմացաք, որ մենք կո՞րել ենք:

ԱՆԱՀԻՏ. — Դեռ չէր մթնել, որ մայրիկդ անհան-գստացած եկավ մեզ մոտ և ցույց տվեց քո երկտողը: Ես իսկույն հայտնեցի Նինային, իսկ նա հավաքեց օղակի անդամներին: Ծա-տով հավաքվեցինք ձեր տանը: Եկել էին նաև քո քեռին, հորեղբայրը և Սարոյի հայրիկը:

ՆԻՆԱ. — Մինչև մեր գալը, նրանք գնացել էին ձորի կողմը: Մենք էլ որոշեցինք շարժվել այս կողմ: Բա երկուսով չէի՞ք վախենում:

ԴԱՎԻԹ. — Սկզբում Սարոն մի քիչ վախենում էր, բայց հետո սրտապնդվեց: Ապրի՛, նա դոչաղ տղա է:

ՆԻՆԱ. — Իսկ դու չէի՞ր վախենում:

ԴԱՎԻԹ. — Վատ երազ տեսա... Սարսափելի երազ...

Որ արթնացա, մի քիչ վախենում էի, բայց երբ ձեր ձայները լսեցի, ամեն ինչ անցավ:

*(Գալիս են տղաները և բերում իրենց պատ-րաստած պատգարակը):*

ՌՈՒԲԵՆ. — Մի քիչ կոշտ ու կոպիտ է, բայց ոչի՜նչ, յոլա կտանի:

ՆԻՆԱ. — Սարո՛, բոլորից փոքրը դու ես, վերցրու լապտերը: Դու միայն կլուսավորես ճանա-պարհը, իսկ մենք կտանենք պատգարակը: Ես ու Վարդանն սկսում ենք: Վերցրե՛նք:

ԴԱՎԻԹ. — Ո՛չ, սպասեցեք...Մի քիչ սպասեցեք: *(Նայում է բոլորին)* Ես արժանի չեմ...

ՆԻՆԱ. — Դե, դե առանց ավելորդ համեստության:

ԴԱՎԻԹ. — Ընկերնե՛ր: Ես հենց նոր հասկացա, որ՝
Ով ընկերոջը հավատում է ջերմորեն,
Զգում է օգնող ձեռքը ընկերոջ.
Կյանքի հորձանքում չի կորչի երբեք,
Չի մնա երբեք դժբախտության մեջ:

ՎԱՐԴԱՆ. — Դրա համար մի՛շտ միասին լինենք:

ԲՈԼՈՐԸ. — Մի՛շտ միասին:

ՆԻՆԱ. — Երգենք, ընկերնե՛ր:

*Օղակն սկսում է երգել: Աստիճանաբար հավաքվում են տարբեր ազգերի տարազներ հագած բազմաթիվ պիոներներ:*

*Երգում են «Բյուր ազգի որդիներս...»*

ՎԱՐԱԳՈՒՅՐ






## ՔԱՐՏԵԶԸ ՓՈԽՎՈՒՄ Է

1960 թվականի փետրվարի 5

*Մենք ուզում էինք մեկնել Քաջարան, Լոռավան և Հրազդան, որպեսզի իմանայինք, թե վերջին ժամանակներս ի՞նչ փոփոխություններ է կրել մեր ռեսպուբլիկայի քարտեզը: Բայց մեր տղաներից մի քանիսի մայրերը թույլ չտվին Քաջարան մեկնել: Նրանք ասում էին, որ հեռու է Քաջարանը, իսկ հիմա էլ ձմեռ է: Մեր ջոկատավար ընկեր Համբիկն ու խմբակի ղեկավար ընկեր Պետրոսյանն էլ այդպես էին ասում: Այդ ժամանակ որոշեցինք գնալ Լոռավան և Հրազդան, իսկ Քաջարանի մասին հետաքրքիր տեղեկություններ կհավաքի ու զեկուցում կտա Սոս Կիրակոսյանը:*

*Այսօր տեղի ունեցավ պարապմունքը, որտեղ լսեցինք Սոսի զեկուցումը: Նա ինքը համառոտակի գրի կառնի իր զեկուցման բովանդակությունը:*

*Խմբակի ավագ՝ ԱՐՄԵՆ ԱԼԱՎԵՐԴՅԱՆ*

*Քաջարան տանող ճանապարհը Ղափան քաղաքից բարձրանում է ավելի ու ավելի վեր՝ դեպի լեռները: Ճանապարհը շատ գեղեցիկ է և անցնում է Ողջի գետի այնպիսի մի կիրճի միջից, որով գնալն անգամ սարսափելի է: Ճանապարհից երևում են Բաղաբերդի ամրոցը, որը կառուցվել է երրորդ դարում, և Դավիթ-Բեկի ամրոցի մնացորդները:*

*Քաջարան անունը առաջ է եկել «քաջ» բառից: Եվ դա ճիշտ է: Միայն խիզախ հերոսները կարող էին մի ամբողջ քաղաք կառուցել Զանգեզուրի անմատչելի լեռներում: Չէ՞ որ Քաջարանը գտնվում է ծովի մակերևույթից գրեթե 2300 մետր բարձրության վրա, ամպերից վեր, հավերժական ձյուների սահմանների մոտ:*

*Քաջարանը շատ երիտասարդ քաղաք է: Նրա*



շինարարությունը սկսվել է մոտավորապես տասը տարի առաջ։ Կոմբինատը սկսել է պղինձ և մոլիբդեն տալ բոլորովին վերջերս, 1952 թվականից։ Իսկ այժմ բնակչության թվով Քաջարանը Հայաստանի ութերորդ քաղաքն է։ Այնտեղ ապրում է շուրջ 12 հազար մարդ։

Այն լեռը, որտեղից հանում են պղինձ ու մոլիբդեն, կոչվում է Գանձասար։ Եվ դա շատ հարմար անուն է. լեռան մեջ հարուստ հանքերի մի ամբողջ գանձ կա։

Քաջարանի կոմբինատը դա հանքերն են, ֆաբրիկաները, արհեստանոցները, երկու ճոպանուղիները, տարբեր տեսակի բազմաթիվ մեքենաները։ Իսկ Քաջարան քաղաքը բաղկացած է չորս ավանից, որոնք դեռևս անջատված են միմյանցից, բայց այնտեղ շինարարությունն այնպես արագ է ընթանում, որ շուտով ավանները կմիանան իրար։ Քաղաքի բնակիչների համար արդեն կառուցված են բնակելի շատ տներ, դպրոցներ, հիվանդանոցներ, ճաշարաններ, կուլտուրայի շատ գեղեցիկ մի պալատ, հյուրանոց։

Քաղաքի շինարարությունը շարունակվում է և այժմ։ Ապագայում Քաջարանը կդառնա Հայաստանի գունավոր մետալուրգիայի ամենախոշոր կենտրոնը։

Ահա այս քաղաքի մասին էլ այսօր ես ասացի իմ զեկուցման մեջ։

ՍՈՍ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ



1960 թվականի փետրվարի 13

Դպրոցի շեֆ գործարանը մեզ ավտոբուս տվեց, և երեկ մեր ամբողջ խմբակը մեկնեց Լուսավան։ Ես օրագրում կգրեմ, թե այնտեղ մենք ինչ տեսանք ու իմացանք։

Նախ, Լուսավանի համառոտ պատմությունը։ Տասներկու տարի առաջ, երբ կառուցվում էր Հայաստանի ամենախոշոր հիդրոէլեկտրակայանը՝ Գյումուշգէսը, շինարարների համար կար ութ ժամանակավոր ավան։ Նրանցից մեկը, որը կոչվում էր «Ժամանակավոր ավան №7», շարունակեց աճել ու մեծանալ նաև հիդրոկայանի շինարարության ավարտումից հետո։ Այդ ավանը ծնունդ առավ այն հիդրոէլեկտրակայանի հետ, որը լույս տվեց մեր ռեսպուբլիկայի քաղաքներին ու գյու-

վերին։ Անա դրա համար էլ ավանի բնակիչները որոշեցին այն կոչել Լուսավան։ Այժմ Լուսավանում կան բազմաթիվ տուֆաշեն առանձնատներ և երկու-երեք հարկանի շենքեր, փոքրիկ ակումբ, գրադարան, պոլիկլինիկա, հիվանդանոց, բժշկական շտապ օգնություն։

Եղանք երկաթուղային կայարանում։ Առաջ Լուսավան կարելի էր գալ միայն ավտոմեքենայով, իսկ հիմա մարդատար գնացքներ են գալիս այստեղ։

Գնացինք նաև Լուսավանի գործարանները։ Երկաթ-բետոնե կոնստրուկցիաների գործարանում արտադրում են պատրաստի մասեր, որոնցից կարելի է տներ հավաքել։ Ներքաշող հաստոցների գործարանը այնպիսի բարդ հաստոցներ է թողարկում, որպիսիք մինչ այդ պատրաստվում էին միայն Լենինգրադում և Օդեսայում։

Գործիքաշինական գործարանը դեռևս կառուցվում է։ Դա կլինի ոչ միայն Լուսավանի ամենամեծ գործարանը, այլև Հայաստանի ամենախոշորներից մեկը։ Այնտեղ կաշխատեն երեք հազար մարդ, այսինքն ավելի շատ, քան Լուսավանի այժմյան բնակչությունն է։

Լուսավանում դեռ կկառուցվեն քիմիական ապարատուրայի գործարան, ստադիոն, կինոթատրոն և շատ ու շատ ուրիշ բաներ։ Բնակչության թիվը կհասնի 30 հազարի։ Այո, այն ժամանակ, գուցե և ավելի շուտ, այսօրվա ավանը կդառնա իսկական քաղաք։

ՍԵԴԱ ՄԻՐԶՈՅԱՆ

1960 թվականի փետրվարի 20

Երեկ շեֆ գործարանը մեզ նորից ավտոբուս տվեց, և մենք կրկին էքսկուրսիայի մեկնեցինք։ Այս անգամ՝ Հրազդան-քաղաքը։ Լուսավանը ապագա քաղաք է, իսկ Հրազդանը քաղաք է արդեն այսօր։ Նոր քարտեզներում այդպես էլ գրված է։ Բայց մինչև անցած տարվա ամառը, այն մի ավան էր և կոչվում էր Ախտա։

Հրազդանում մենք տեսանք այն ամենը, ինչ կառուցվել է վերջին ժամանակներում։ Կուլտուրայի պալատը ամենևին էլ պակաս չէ Երևանի թատրոններից։ Այստեղ կա նաև հեռուստատեսային ռադիոկայան, որի օգնությամբ կարելի է տեսնել Երևանի հեռուստատեսային հաղորդումները։ Կուլտուրայի և հանգստի զբոսայգին գտնվում է մի մեծ ջրամբարի ափին, որին տեղացիներն ասում են «Հրազդանի ծով»։ Եվ իրոք, ասես ծով լինի։ Չգիտես որտեղից՝ նույնիսկ ճայեր են հայտնվել։

Մենք նայեցինք Աթարբեկյանի հիդրոէլեկտրակայանը՝ իր նոր բնակելի ավանով ու երկաթուղային կայարանով։ Այդ մասին ես մանրամասն չեմ գրի։ Ընկեր Պետրոսյանն ասաց, որ մենք առանձին պարապմունք կունենանք Հայաստանի հիդրոկայանների և Երևան-Սևան երկաթուղագծի մասին։

Այժմ կգրեմ ամենագլխավորը։ Դա այն է, որ առաջ Ախտայի բնակիչները ամենից շատ զբաղված էին գյուղատնտեսությամբ, իսկ այժմ Հրազդան քաղաքը դառնում է մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության խոշոր կենտրոններից մեկը։ Դեռևս չի դարձել, բայց կդառնա։

Արդեն սկսվել է լեռնաքիմիական վիթխարի կոմբինատի շինարարությունը։ Բանն այն է, որ Հրազդանի մոտ շատ հանքանյութեր կան, որոնք կոչվում են նեֆելինյան սիենիտներ։ Առաջ կարծում էին, թե դրանք միայն լավ քարեր են հու



Նկ. Գ. ԽԱՆԱՂՅԱՆԻ

-շարժիչների համար։ Հետագայում գիտնականները պարզեցին, որ դրանցից կարելի է ստանալ ալյումին, ցեմենտ, կիսահաղորդիչներ և շատ ուրիշ կարևոր նյութեր։ Նույնիսկ բոլորովին նոր քիմիական արտադրանք, որը կոչվում է «նեֆանիտ»։ Սրանից կարելի է պատրաստել ապակի և բյուրեղապակի։ Այս բոլոր նյութերը նեֆելինյան սիենիտներից կստացվեն լեռնաքիմիական կոմբինատում։

Շուտով կսկսվի կապրոնե կորդի գործարանի շինարարությունը։ Սա նույնպես մեծ գործարան է։ Կորդը անհրաժեշտ է ավտոդողեր պատրաստելու համար։ Եթե կորդը պատրաստվի կապրոնից, ապա ավելի քիչ ռետին կպահանջվի, իսկ դողերը մեկ ու կես անգամ ավելի երկար կաշխատեն։

Բացի այդ, կկառուցվեն կաթի գործարան, փայտամշակման կոմբինատ, սառցարան և ուրիշ ձեռնարկություններ։ Իսկ երբ Հրազդան հասնի Ղարադաղի գազը, այստեղ կկառուցվի հզոր ջերմաէլեկտրակայան։ Շատ շուտով Հրազդանի բնակչությունը կհասնի 40—50 հազարի։ Այնքան, որքան հիմա ունի Կիրովականը։

Հրազդանից հետո մենք գնացինք Ծաղկաձոր։ Հիմա այստեղ խաղաղ է, բայց թե ինչպիսին է լինում ամռանը, բոլորն էլ լավ գիտեն։ Ինձ թվում է՝ Երևանում չկա մի պիոներ, որը եղած չլինի Ծաղկաձորի ճամբարներում։ Ծաղկաձորը իսկական մանկական քաղաք է։ Երբ մենք այնտեղ էինք, Սերգ. Միրզոյանն ասաց, որ նա անգիր գիտե Ծաղկաձորի մասին Սիլվա Կապուտիկյանի բանաստեղծությունը և արտասանեց։ Ինձ շատ դուր եկավ, և ոտանավորի մի մասը որոշեցի գրի առնել օրագրում։

Ծաղկաձորում, Ծաղկաձորում
Կանաչ անտա՜ռն է օրորվում...

Ծաղկաձորում մեր ճամբարն էր,
Պիոներական մեր աշխա՜րհն էր։
Մենք մանուկներ՝ տղա-աղջիկ,
Կարմրավզկա՜պ, ոտաբոբի՜կ.
Մեր վրանը՝ երկնքի տակ,
Մեր օրերը խաղ ու գնդակ...



ԳԱՐԵԳԻՆ ՄԻՐԶՈՅԱՆ

## Մեր Անդրեյը

ՄԱՐԿ ՊԻՏԼՅԱՐՍԿԻ

Դու չգիտե՞ս Անդրեյչին,
Ա՜յ, վարպետ է նա իսկական.
Նա է տնկել գետի միջին
Սյուները այդ հսկայական։
Ձիգ լարերը, հապա մի տե՜ս,
Սլանում են նետերի պես,
Տանում ջրի ուժը հզոր
Մինչև գյուղերը հեռավոր։
Բայց փոթորկից, սաստիկ հողմից
Մեկ էլ տեսար՝ լարերը այս
Կտրվեցին մեծ լարումից
Աղետ բերին ու մեծ վնաս։
Հանկարծ հրդե՜հ, խարարանցո՜ւմ,
Օգնության են մարդիկ կանչում.
Եվ այնտեղ է հասնում. անշուշտ,
Անդրեյչը բոլորից շուտ։
Մագլցում է սյուները նա
Այնպես ճարպի՜կ, այնպես արա՜գ.
Ու տեսնում են մեկ էլ, ահա,
Հանգան խուցն կայծ ու կրակ...
Հարձակվում են և գրոհում
Հողմերը խենթ ու կատաղի.
Էլեկտրասյունն է դողդողում,
Քիչ է մնում ելնի տեղից։
Բայց Անդրեյչն հանգիստ է շատ,
Աշխատում է նա անվհատ։
Թող ձեռքերից արյուն կաթի,
Նա չի զիջի հողմերին չար.
Նրա սրտում ժողովրդի
Խորունկ սերն է բոցկլտում վառ։
Բուք բորանին դաժան ձմռան,
Սառույցի ու ձյուների մեջ,
Դու կտեսնես դարձյալ նրան՝
Մագլցում է երկինքն անվերջ։
Եվ պատահեց նույնիսկ մի դեպք,
Որ զարմացան աստղերն անգամ.
Նա աշխատեց ամպերից վեր
Մի ամբողջ օր և երկու ժամ...
Առաջ եղել է մոնտաժոր,
Հիմա դարձել հայտնի մոնտյոր։
Քաջ տանկիստ է եղել քեռին,
Կոտրել է ֆաշիստներին.
Եվ պատանի հասակում էլ
Փոստատար է գյուղում եղել։
Իսկ դրանից առաջ, եղբայր,
Մանուկ էր նա մեզ պես կայտառ։
Հասկանու՞մ ես... երբ մեծանամ,
Հենց նրա մոտ ես կգնամ։
Եվ նա կասի. «Ա՜յ, շատ ապրես,
Արի, որ մեզ փոխարինես»։

Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ



# ՈՐՄԶԴԵՂՆԸ

ՏԻԳՐԱՆ ՊՈՂՈՍՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Հունիսի վերջին օրերն էին, հեռավոր հյուսիսի ամենաերկար օրերը։ Արևն այդ ժամանակ կարծես մայր չի մտնում։ Նա պտույտ է գալիս՝ հորիզոնում շրջան կատարելով։ Միայն գիշերվա տասից հետո թաքնվում է լեռներից այն կողմ, և մինչև կես գիշեր կանգնում է մթնշաղը։ Մթնշաղն անուշ ու դուրեկան է, սկզբում լուսավոր, ապա՝ գիշերվա մեկից մինչև երկուսը՝ աղոտ։ Երկուսից հետո հորիզոնը արևելքում դառնում է բաց կաթնագույն, ապա հետզհետե լուսավորվում։*

— Վե՛ր կաց, մինչև տեղ հասնենք, շոգը կընկնի,— ասաց Զուպրին պապը՝ ինձ հրելով։— Տասնութ կիլոմետր պիտի լեռներով ու ճահիճներով անցնենք։

Գիշերվա երեքն էր, հորիզոնը արևելքում փոխվում էր ալ-վարդագույնի, կարծես վառվում էր բոցերում։ Մինչ ես, կախարդված այդ հրաշալիքով, նայում էի, պապը ճանապարհի պատրաստությունն էր տեսնում։

— Հա՛յդա, ու՛շ է, ժամանակը չէ պոետական մտքերով տարվելու,— ասաց պապը և ինձ մեկնեց ճամպրուկը։

Նա գնում էր առջևից, երկփողանին ուսին գցած, քաշելով՝ բերնից անպակաս ծխամորճը։ Ես հետևում էի նրան։ Ջուրը ճողփում էր մեր ոտքերի տակ։ Մինչև կուրծքը հասնող խոտը լողացած էր փաղորդյան ցողով և մեզ անխնա թրջում էր։ Ես ցուրտ էի զգում։

Հյուսիսում տարվա այդ շրջանում ծաղկում է բնությունը։ Երփներանգ ծաղիկները միաձուլվում են կանաչ ֆոնին, տալով նրան հմայիչ տեսք։ Ծաղիկներն այստեղ համարյա անբույր են և այդ պատճառով էլ վառ գույներով են ներկված։

Այժմ մենք լեռնալանջերով քայլում ենք վեր, ետ քաշելով մացառները։ Մեր շուրջը փռված է տայգան, անծայր, անեզր։ Ծառերի վրա խաղում են սկյուռները։

— Պա՛պ, սկյու՜ռ, — ցույց եմ տալիս ես։ Նա անտարբերությամբ թափ է տալիս ձեռքը։

—Չարժե դրանց վրա փամփուշտ փչացնել։ Համ էլ հիմա դրանք ձագեր են հանում, չի կարելի խփել։

Արդեն շոգ է, քայլում ենք քրտնած։ Մոծակները պարսերով հետևում են մեզ։ Նրանք անխիղճ ծակում են, ու կծած տեղում դուրս եկած փոքրիկ բշտիկները քոր են գալիս երկար ժամանակ։ Շոգի պատճառով դժվար է քայլել մոծակապաշտպան դիմակի տակ։ Ես ճյուղով քշում եմ մոծակներին, անընդհատ թափահարելով ձեռքս։

— Ոչի՛նչ, քիչ մնաց, համբերիր. շուտով կլինենք լեռների վրա։ Այնտեղ հով է, և այդ անիրավները մեզ չեն անհանգստացնի։

Շուտով, իսկապես, հեռու հորիզոններում բացվում են անտառապատ լեռները։ Արծաթագույնի տվող ոլորապտույտ գետերն ու գետակները կանաչ բնությանը ավելի դուրեկան տեսք են տալիս։ Իսկ վերևում, կապույտ, անամպ երկինքն է։ Լեռ-



ների բարձունքում խաղում է թեթև հովը։

— Լա՛վ, հիմա հանգստանանք մի քիչ, արդեն ճանապարհի կեսն անցանք, մի՛ տրտմիր։

— Բա ես կարծում էի արդեն տե՞ղ ենք հասել։

— Լա՜վ ես շտապում, հա՜։ Օդանավ հո չե՞նք։ Այ թե ի՞նչ է նշանակում անփորձ լինել ոտքով ճամփորդելու։

Վերջապես մեր դեմ բացվեց մի գեղեցիկ ձորահովիտ։ Այնտեղ կանգնած էր դողդոջուն կաղամախիների պուրակը, որն ամփոփում էր հուշիկ շրշյունով։ Խոտը մարդահասակ էր, նրա մեջ կորչում էր հատակ ու պալպաջուն լեռնային գետակը։

— Տեսնու՞մ ես դու որևէ բան այնտեղ։

— Չէ՛, ոչինչ չեմ տեսնում։

— Սուր աչք չունես, սիրելի՛ս, սովոր չես զննելու տայգան։ Ա՛յ, տեսնու՞մ ես, առուն այնտեղ աղեղ է կազմում։ Նկատու՞մ ես խոտերում ինչ-որ գլուխներ։ Իսկ, ա՛յ, ոչ հեռու, ծառի հետևում, կարծես թաքնված կանգնած է մեկը։

Իսկապես, ես տեսա, որ այնտեղ կանգնած էր մի որմզդեղն, որը ուշադիր նայում էր դեպի հեռուները, գլուխը բարձր պահած։ Իսկ մնացածները, կշտացած գիշերվա արոտից, հանգստանում էին խոտի մեջ, դողդոջուն կաղամախիների ստվերում։

— Լա՛վ, նստի՛ր, նրանց չանհանգստացնենք։ Քամին հակառակ է, նրանք մեր հոտը չեն առնի։ Նստիր, թող պահակը մեզ չնկատի։ Գիտցիր, որ որմզդեղնները եղջերուներ չեն։ Նրանք ոչ թե սպիտակ մամուռով են սնվում, այլ խոտով, իսկ ձմռանը ուտում են կաղամախիները։ Նրանք հիշեցնում են կովերին։ Անվտանգ են։ Առաջ շատ են եղել այս կողմերում և մեծ հոտերով են արածել, ինչպես վայրի եղջերուները։ Հիմա շատ քիչ որմզդեղն է մնացել։ Նրանց որսը խստիվ արգելված է։ Մեծ տուգանքի, նույնիսկ դատի կարող են գնալ։ Խաղաղասեր խոտաճարակներ են դրանք, բայց արուները շատ կատաղի են։ Ուժեղ արուները կռվում, ոչնչացնում են թույլերին։ Երբեմն այնպես են կատաղում, որ մյուս կենդանիների վրա էլ են հարձակվում, նույնիսկ՝ մարդու։ Աստված չանի, որ այդ ժամանակ նրանց հանդիպես։ Արուները անհամեմատ խոշոր են, նրանց քաշը մինչև երեք հարյուր կիլոգրամ է։ Նրանք շատ զգույշ են, քաշվում են հեռավոր կաղամախիների պուրակները, այնպիսի տեղեր, ուր մարդու ոտք չի դիպչում, գայլեր չկան։ Որմզդեղնի միակ թշնամին արջն է, որը պակաս խորամանկ չի և կրնկակոխ հետևում է նրանց։ Այ, տեսա՞ր, հսկողն ինչ-որ վտանգ զգաց։ Գիտցիր, որ արջն էլ է ջոկում քամու ուղղությունը և հոտ առնում։ Նա որմզդեղններին մոտենում է թաքուն և քամու հակառակ կողմից, որ իր հոտը չառնեն։ Բայց որմզդեղնի լսողությունն ու տեսողությունը շատ սուր է. նա արագավազ է, դրանք են նրա պաշտպանության միջոցները։

Առաջնորդն ինչ-որ ձայն արձակելով պոկվեց տեղից։ Նրան մի ակնթարթում հետևեցին մյուսները։ Մի արջ դուրս նետվեց թփուտից։ Նա՝ այդ ծանրաշարժը, հիմա այնպես արագավազ դարձավ, որ նույնիսկ ձգտում է կարճ ճանապարհով կտրել նրանց առաջը։

Որմզդեղններն արագ շուռ եկան հակառակ կողմը։ Նրանք շփոթված էին։ Աշխատում էին իրենց մեջ առած քշել-տանել և փոքրիկ ձագին, բայց չէ՞ որ նա թույլ է ու չունի մեծերի արագաշարժությունը։ Մայր որմզդեղնը երբեք իր ձագին չի թողնի ու փախչի։ Բայց ահա, ահա արջը նորից մոտ է,

և երևում է, որ որմզդեղններից մեկը զոհ է գնալու։ Զուպրինը լցրեց երկփողանին ու վազեց այն կողմ։ Ոչ արջը և ոչ էլ որմզդեղնները չնկատեցին նոր թըշնամու հայտնվելը։ Նրանք միմյանցից բացի ոչինչ չեն տեսնում այդ ժամանակ։ Արջը կարծես թե հարվածեց վերջին փախչողին, հասնելով նրան, բայց որմզդեղնը անսպասելիորեն շուռ եկավ ու նրա ուժեղ հարվածից արջը գլորվեց։ Մնացածները արագ հեռանում էին։ Մի ակնթարթում արջը նորից կռվի բռնվեց արուի հետ։ Սկսվեց կյանքի ու մահու մենամարտ։

Արջը հարձակողական պտույտներ էր կատարում նրա շուրջը, բայց ուժեղ էին որմզդեղնի հարվածները, որ նա տալիս էր իր ետևի և առջևի ոտքերով, գլխով։ Ես զարմացած էի, չսպասելով արջից այդպիսի արագաշարժություն։ Որմզդեղնը ձըգտում էր հարմար պահ որսալ հողոպրելու, բայց արջը գիտեր, որ իրեն վազքում նրան չի հասնի ու որմզդեղնին մեխել էր իր տեղում՝ փախչելու հնարավորություն չտալով։ Կռիվը համառ էր, երկարատև, փորձված որմզդեղնը երևում էր մի անգամ չէ, որ ողջ է դուրս եկել այդպիսի կռիվներից և իր կյանքը չէր զիջում։

Ես լարված նայում եմ ազնիվ կենդանու և գազանի մենամարտին։ Վազում եմ Զուպրին պապի մոտ, աղաչելով, որ վերջ տա գազանին։

— Սպասի՛ր, — կարճ կտրում է պապը, աչքը չհեռացնելով նրանցից։ Ես լռում եմ։ Անցնում են երկար րոպեներ։ Նրանք երկուսն էլ կարծես հոգնած են։ Նրանց շարժումները դառնում են թույլ։ Արջը հիմա ձգտում է անսպասելի հարձակումներ գործել։ Բավական է, որ նա բռնի որմզդեղնի մարմնի որևէ տեղից և ամեն ինչ վերջացած կլինի։ Որմզդեղնը այդ շատ լավ գիտի։ Դրա համար էլ աշխատում է արջին մոտ չթողնել։ Գիտի, որ դա իր վերջն է։

Թե ինչ կատարվեց հանկարծ, ես իսկ չնկատեցի։ Միայն թվաց, թե որմզդեղնը սայթաքեց ու արջը մի թռիչքով բռնեց նրա վզից։ Ես լսեցի որմզդեղնի սրտաճմլիկ գոռոցը։ Ես կատաղությունից պիտի թռչեի Զուպրին պապի վրա, բռնելով նրա կոկորդից։ Բայց կարծես երազում լսեցի մի ուժեղ թնդյուն, ապա երկրորդը։ Տայգան արձագանքեց խուլ ու ահավոր։ Արջը թպրտաց։ Որմզդեղնը ազատվելով փախավ խելահեղ վազքով, ինձ թվաց, որ ոչ թե նա վազում էր, այլ թռչում։ Տայգան ճարճատում էր։

— Հա՛, հա՛, հա՛, հա՛, — լսեցի Զուպրին պապի թավ քրքիջը։ Ես կարծես ուշքի եկա։ — Ե՛կ, գնանք մեր ծուռթաթի մոտ։

Արջն ընկած էր անշարժ, նրա գանգը ցրված էր։

— Հը՞, անիրա՛վ, ինչքա՞ն դուր մեզ պետք է վնասեր։ Մենք իրավունք չունենք որմզդեղն սպանելու, դու բանի՞ գլխանի ես որ, — կատակով ասաց պապը, ոտքով խփելով արջի ծանր մարմնին, — որսի տեղ ինչ որս գտար, տեսա՞ր, ինչ վերջ ունեցար։

— Բա որմզդեղնը, ինձ թվաց, թե նա թռչում է։

— Դու նրա տեղն ավելի արագ կթռչեիր, — կատակեց Զուպրին պապը։ — Սկզբում մահվան վախից, հետո հրացանի ճայթյունները ու արջից հրաշքով ազատվելը... Իհարկե, կթռչեիր։

Մենք կրակ արինք վճիտ գետի ափին, կաղամախիների ստվերում։ Զուպրին պապը երկար ժամանակ զբաղված էր արջի միսը խորովելով։ Օրը երեկոյանում էր։ Ընթրեցինք մեծ ախորժակով ու գիշերեցինք կրակի կողքին։

Զուպրին պապը վաղուց խռմփացնում էր, ես անքուն էի։ Տայգան հուշիկ ու ահավոր աղմկում էր։ Այդ գետակն էր մռնչում, ու կաղամախիները օրորվում էին սվսվալով։





# Ճանճն ու մուկը



ՎԱՐԴԱՆ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Երբ օրերը լավ տաքացան,
Ճանճն ու մուկը ընկերացան:
Ապրում էին նրանք սիրով,
Հացի մանր փշրանքներով:

Մի օր նրանք իրար անցան,
Միտք արեցին ու բարկացան.
Չեղած բան է, ծաղր ու ծանակ,
Մեծ աշխարհում այս բովանդակ,
Որ ճանճերը ու մկները
Ուտեն հացի փշրանքները:

— Եղբայր մկնիկ, գտա՛, գտա՛,
Դու այս ծակից մտիկ արա,
Ուտելիքը հենց որ բերեն,
Սուսիկ-փուսիկ կտանք վրա...

Մեկ էլ ճանճը ուրախ տզզաց.
— Մկնիկ եղբայր,—նրան ասաց:—
Տես, գալիս է, այս տան տերը,
Ուտելիքը մերն է, մերը:

Ճանճը հենց որ խոսքն ավարտեց
Մեղրաթղթի վրա կանգնեց,
Ագահ ծծեց հյութը նրա,
Ոտքը մնաց թղթի վրա:

Իսկ մկնիկը վազեց արագ,
Կծեց տարավ մի գունդ կարագ,
Բայց առաջը կտրեց թաքուն
Մարաղ մտած հսկա կատուն...

Մեռան իսկույն լեղապատառ
Գող մկնիկն ու ճանճը հիմար։
Գողի վերջն էլ այս է եղել,
Աշխատիր միշտ ակնիվ լինել:



Նկ. Հ. ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

*Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ*

## ԱՐԲԱՆՅԱԿԸ

Ահա կլոր շրջանակ.
Շուրջը՝ շողեր անքանակ.
Գիտե՞ք ինչ եմ նկարել.
Պարզ է, արև է, արև։
Սա էլ լուսնի աղեղը.
Իսկ սրանք էլ աստղեր են։
Ջարչարվում եմ շարունակ
Այս էլ ինչքան ժամանակ,
Որ նկարեմ նրանց մոտ
Արբանյակը մեր ծանոթ։
Բայց չգիտեմ ինչ ձևի.
Երկարո՞ւկ է երևի...
Ես չեմ տեսել.
Մայրիկս էլ
Դեռ արբանյակ չի տեսել...
Լավ, կսպասեմ ես մի քիչ՝
Կհարցնեմ հայրիկից...



## ՄԵՂՈՒՆ

Սա ծաղիկ է, սա՝ ցողուն,
Ծաղկի վրա՝ ժիր մեղուն.
Թերթերի մեջ է մտել.
Ծաղկի առատ հյութ գտել։
Իսկ անկյունում, ծառի տակ
Նկարել եմ մի փեթակ.
Հենց որ մեղուն կշտանա,
Փեթակի մեջ կգնա,
Որ այնտեղ էլ աշխատի
Ու մեզ մեղր պատրաստի։



## ԱՇՈՒՆ

Դեղնել են այս ծառերը.
Ցած է թափվել տերևը.
Աշնան քամին եկել է
Ու ճյուղերը թեքել է։
Իսկ դու, մայրիկ, հիշեցի՞ր,
Անցյալ օրն ինչ ասացիր.
Ասացիր, որ աշնանը
Էլ չես թողնի ինձ տանը,
Որ իմ եղբոր՝ Սոսի պես,
Ինձ էլ դպրոց կտանես։
Նայիր, աշուն է արդեն,
Դիմումները պատրա՞ստ են...





# ԻՄ ՀՅՈՒՐԵՐԸ



Այսօր ամբողջ մի երես
Տիկնիկներ եմ նկարել.
Այս շեկլիկը, ռուս է սա,
Նրա անունն է Մաշա։

Տե՛ս, կանգնած է նրա մոտ
Նեգր Թոմը սևամորթ.
Այս դեղինն էլ, իմացիր,
Չինացի է, չինացի.

Իսկ այս քեռին ֆեսավոր՝
Արաբական մի բանվոր,
Ջա՜ն, այս ինչքան հյուրե՜ր կան,
Ֆեստիվալ է իսկական...



# ՄԻ ՄԵԾ ՇԵՆՔ

Նկարել եմ ես, տեսե՛ք,
Հինգհարկանի մի մեծ շենք.
Թե տետրակում տեղ աներ՝
Ավելի մեծ կլիներ։
Որ չմնա շենքը մութ,
Բացել եմ շատ լուսամուտ,
Սա էլ սանդուղք ու դռներ,
Հապա ինչպե՞ս մտնեն ներս...
Ահա ձեզ շենք պատրաստի,
Պարզ է, դատարկ չի մնա.
Ում պապան լավ աշխատի՝
Նա այնտեղ տուն կստանա...

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# Հրաչիկը և ձկան յուղը

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Երեկո է։ Հրաչիկի քնելու ժամն է։ Մայրիկն ասաց.

— Հրաչի՛կ, խմիր ձկան յուղը։

— Ես չեմ սիրում ձկան յուղ,— պատասխանեց Հրաչիկը։

— Խմի՛ր, որպեսզի ձկները քեզ սիրեն։

— Չեմ ուզում,— համառեց հրաչիկը։

Մայրիկը համոզում էր։

— Խմի՛ր, որ առողջ լինես, ուժեղանաս և ամռանը ձկան պես լող տալ սովորես։

— Ո՛չ,— պատասխանեց Հրաչիկը։

Մայրիկը պառկեցրեց Հրաչիկին։ Մայրիկի աչքերը կապույտ են։ Երբ նա ուրախ է, աչքերը փայլում են։ Հիմա մայրիկի աչքերը տխուր են։ Հրաչիկն էլ տխրեց։ Մայրիկը բարկացել է, բայց ուղղում է վերմակը և ծածկում Հրաչիկի ոտքը, որ դուրս է մնացել։ Հրաչիկը չի սիրում ձկան յուղ, բայց ուզում է, որ մայրիկը ուրախանա։ Ուրիշ ի՞նչ կարող է անել, որ մայրիկը չտխրի։ Համբուրի՞, արտասանի՞, թե՞ երգի։ Բայց Հրաչիկի կոպերը ծանրացել էին, և նա քնեց։

Խորը քնեց, հետո լուսաբացին երազ տեսավ։ Ինքը նստած է փոքրիկ նավակի մեջ՝ մեն մենակ։ Նավակը լողում է ծովի վրա։ Շուրջը միայն ջուր է և ջուր։ Այդ ջրի մեջ խաղում են ձկները։ Վերևում փայլում է արևը։ Եվ մայրիկի աչքերի պես կապույտ երկինքը ներքև է նայում։ Հրաչիկը հիշեց մայրիկին, կանչեց.

— Մամա՛, մամա՛...— Բայց մայրիկը չկար։ Հրաչիկն սկսեց լաց լինել։ Կանչեց ձկներին։

— Եկե՛ք, եկե՛ք, ձկնիկներ, եկեք միասին խաղանք։

Ձկները չպատասխանեցին և շարունակեցին խաղալ։

Հրաչիկը լաց էր լինում և լացի միջից ասում.

— Ես ձեզ սիրում եմ, ձկնիկներ, ձեր փոքրիկ աչիկներն էլ եմ սիրում, ձեր բարակ պոչերն էլ...

— Իսկ ձկան յուղ սիրու՞մ ես,— լսվեց մի ձայն։



Հրաչիկը ոչինչ չպատասխանեց։ Նա չէր ուզում ստել։ Աչիկները սրբեց ու նայեց երկնքին և ի՞նչ տեսնի։ Մայրիկի լվացած շապիկների պես ճերմակ երեք արագիլներ թռչում են օդում։ Նրանք իրենց կարմիր կտուցներով բռնել են մի կարմիր թել։

Եվ այդ երեք թելերից կախված է մի շիշ ձկան յուղ։

— Ձկան յո՛ւղը, ձկան յո՛ւղը, հիմա կխմեմ, կուժեղանամ, լող տալ կսովորեմ և կխաղամ ձկնիկների հետ, — ուրախ-ուրախ բացականչեց Հրաչիկը։

Երբ արագիլները թռչելով մոտեցան, Հրաչիկը թևերը բացեց, որ բռնի շիշը։ Բայց արագիլները նորից վեր բարձրացան, երկու անգամ պտտվեցին օդում, հեռացան և իրենց հետ տարան ձկան յուղի շիշը։

Արագիլներն սկզբում այնքան հեռացան, որ Հրաչիկն էլ չէր տեսնում նրանց կարմիր ու երկար տոտիկները։ Հետո այնքան հեռացան, որ նմանվեցին ամպի փոքրիկ կտորների ու բոլորովին անհետացան։ Տարան ձկան յուղը, տարան։ Հրաչիկն էլ չի ուժեղանա, չի կարողանա լողալ սովորել և խաղալ ձկների հետ։

Հրաչիկը լաց եղավ, այնքան շատ լաց եղավ, որ նավակը լցվեց արցունքներով և սկսեց սուզվել։ Հրաչիկն սկսեց կանչել

— Մամա՛, մամա՛...

Մայրիկն ո՞ւր է, որ չի գալիս։ Բարկացել է, դրա համա՞ր չի գալիս։

Ձկները տեսան, որ Հրաչիկի նավակը պիտի սուզվի, գլխի ընկան, որ նա եթե իրենց յուղը չի սիրում, ուժեղ չի, ուրեմըն լողալ չի կարող և ուր որ է կխեղդվի։ Ձկները խղճացին Հրաչիկին, մոտեցան և իրենց պոչերով սկսեցին դուրս թափել նավակի միջի արցունքները։ Նավակն էլ փրկվեց, Հրաչիկն էլ։

Դեռ Հրաչիկի քունը գլուխն էր, երբ իր ականջի տակ լսեց մայրիկի ձայնը.

— Շը՛շ, շը՛շ, լաց մի լինի, բալիկ ջան, մի՛ վախենա։ — Եվ մայրիկի մատները նրա արցունքներն էին սրբում թշիկների վրայից։

Հրաչիկը աչիկները կիսաբաց արեց և ասաց.

— Մամա, ձկան յո՛ւղը, ձկան յո՛ւղը...



# ՉՈՐՍ ՈՐԴԻ

Մ. ԹԱՐՅԱՆ

Ուժից ընկած մի մարդ կար ծեր՝
Չորս հարազատ որդի ուներ,
Չորսն էլ առույգ, կերած-խմած,
Չորսն էլ մի մոր ձեռքով պահած,
Մեկը-մեկից բոյով-բուսով,
Մեկը-մեկից աչքի լույսով:
Ով որ տեսներ չորս եղբորը,
— Բախտավոր ես,—կասեր հորը:

Սակայն մի օր երեկոյան,
Իր չորս որդով նստած սեղան՝
Հայրն էր ճաշում: Մեկ էլ հանկարծ
Մի կտոր հաց բկին մնաց:
Հայրը հազիվ կանչեց մեծին.
— Պողո՛ս, ջուր բեր, խեղդվեցի:
Իսկ Պողոսը՝ դիմեց փոքրին.
—Գնա՛ ջուր բեր, տուր հայրիկին:
Սա էլ դառավ փոքրին ասաց,
Ինքը մնաց տեղը նստած:

Այսպես մեկը-մեկին ասավ,
Վերջում հերթը փոքրին հասավ,
Ասաց.—Հայրիկ, իմ սիրելի,
Դրանց վրա հույս մի դնի.
Լավ է ինքդ գնաս խմես,
Մի բաժակ էլ հետդ բերես...





# Ես ը

Գ. ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Ինքը թեև թիզ ու կես է,
Բայց ամեն տեղ կասի՝ ես եմ.
«Ես արեցի, ես բերեցի,
Խնդիրները ես լուծեցի»:
Ուռած, փքված նստում դասի,
Ջոռ է տալիս միշտ իր «ես»-ին:
Բայց մի օր էլ ընկերները

Որոշեցին պատժել «ես»-ին.
Նրա բոլոր արարքները
Մեկ-մեկ տվին իր երեսին.
— Ձանձրացել ենք մենք քո «ես»-ից,
Շատ ենք տուժել քո երեսից:
Թե ուզում ես լինել ընկեր,
«Եսդ» ծալիր, մեջտեղ մի՛ բեր:

Նկ. Ա. ՄԵԼՔՈՆՅԱՆԻ



# ՀՈՒՆԱԿԱՆ ՍՐՃԱՐԱՆՈՒՄ*

ԼԵՎ ՎԱԳՆԵՐ

*Գրող Լև Վագները վերջերս գիրք է գրել նշանավոր ծովանկարիչ Հովհաննես Այվազովսկու մասին։ Այդ գրքից տպագրում ենք «Հունական սրճարանում» հատվածը, ուր հեղինակը պատմում է փոքրիկ Հովհաննեսի ամենամեծ երջանկության մասին։*

Դժվար է սրճարանում «ծուտիկի» պարտականություն կատարելը։ Այդ փոքրիկ սրճարանը միշտ լիքն է մարդկանցով։ Նա ունի իր մշտական այցելուները, որոնք ամբողջ երեկոն անց են կացնում այնտեղ, խմում գինի ու սուրճ։ Դրանք հիմնականում ձկնորսներ, առևտրականներ և Թեոդոսիայի նավահանգստում խարիսխ գցած առևտրական նավերի և երկկայմանավերի նավաստիներն են։

Ամենից շատ աղմկում են ձկնորսներն ու նավաստիները։ Նրանք բարձրաձայն վիճում են իրենց մասնագիտությունների առավելությունների մասին. և այն մասին, թե ծովում նրանցից ում համար է ավելի ծանր։

Ձկնորսները խոսում են իրենց բավական դժվար արհեստի գաղտնիքների մասին, ձկների սովորությունների մասին, իրենց ձկնորսական խիզախության մասին։

Նավաստիները չեն զիջում, պատմում են հեռավոր ճանապարհորդությունների, փոթորիկների ու նավերի խորտակման մասին, «Թռչող հոլանդացու» ուրվականներով բնակեցված նավի մասին, որ իբր թե տեսել են մի քանի ծեր նավաստիներ։

Երբեմն վեճը հասնում է ապտակների և քիչ է մնում վերածվի տուրուդմբոցի։ Այդպիսի պահերին բարձր վաճառասեղանի մյուս կողմից անմիջապես այս կողմն է գլորվում սրճարանի հաստամարմին, տակառի նման կլոր հույն տերը։ Առանց դժվարության նա անցնում է սեղանների մոտով և բարձրաձայն ազդարարում, որ հենց այս րոպեին թարմ գինի ստացավ։ Երբեմն նրան հաջողվում է կանխել ընդհարումները և հաշտեցնել վիճողներին։

Բայց առանց կռիվների էլ երեկոները սրճարանում միշտ աղմկոտ է լինում։ Բարձրաձայն խոսակցությանն ու հարբեցողների բացականչություններին խառնվում են դոմինոյի խաղաքարերի չրխկոցները և խաղացողների մոլեգին բացականչությունները։ Սրճարանը միշտ աղմկոտ է, ինչպես տագնապահար եղած մեղուների փեթակում։ Մոմերի լույսը հազիվ է երևում բազմաթիվ

ծխամորճերից ոլորապտույտ բարձրացող ծխի քուլաների մեջ։

Եվ այս ամբողջ աղմուկ-աղաղակի մեջ շարունակ, այս ու այն կողմից, լսվում են բարձրաձայն բղավոցներ։

— Ճուտի՛կ, ճուտի՛կ, այստեղ եկ։

Հովհաննեսը պտտվում է, ինչպես սկյուռը անիվի վրա։ Նա հազիվ է հասցնում փոխել ծխամորճը, հյուրերին՝ սուրճ ու գինի մատուցել, օգնել Աշխենին՝ լվանալու ափսեները, գավաթները, սուրճի բաժակները։

Նրա համար շատ դժվար են անցնում այն ժամերը, երբ սրճարան են գալիս հարուստ առևտրականները։

Նրանց շատ է դուր գալիս այդ աչքաբաց տղան, և նրանք պահանջում են, որ միայն նա իրենց սուրճ մատուցի։

Եվ Հովհաննեսը լարելով իր բոլոր ուժերը, ամեն կերպ աշխատում է որքան հնարավոր է շուտ կատարել նրանց պատվերները, իսկ մի տարեց, գեր մարմնով թուրք, քաղաքի ամենամեծ մրգի խանութի տերը, շարունակ խռպոտ ձայնով բղավում է.

— Ղահվեջի, դոլդուր *)։

Այդ թուրքի պատճառով Հովհաննեսը մի անգամ քիչ էր մնում հեռացվեր աշխատանքից։ Մի երեկո, երբ սրճարանը լիք-լեցուն էր հաճախորդներով, այդ թուրքը շարունակ կրկնում էր իր սովորական «Ղահվեջի, դոլդուր»-ը։ Աղմուկի մեջ Հովհաննեսը չլսեց նրա ձայնը և արագ մոտեցավ հարևան սեղանին, որի մոտ նստած էին հասարակ նավաստիներ։

Թուրքը նեղացավ և աղմուկ բարձրացրեց։ Սրճարանի տերը, գնահատելով այդ հարուստ մշտական հաճախորդին, մոտ վազեց և, խոնարհվելով, ինքն սկսեց լցնել նրա սուրճի բաժակը։

Սակայն սաստիկ զայրացած վաճառականը չհանգստացավ դրանով և պահանջեց, որպեսզի տերը սրճարանից դուրս քշի զզվելի հայ տղային։

Պարզ չէր, թե ինչով կվերջանար այդ բոլորը՝ երբ նրանց կողքին հանկարծ երևաց Հայդարը։ Անսպասելի ուրախությունից Հովհաննեսը բարձր ճչաց։ Ահա արդեն մի քանի ամիս էր ինչ երաժիշտը չէր երևացել Թեոդոսիայում։ Հայդարը տղային կանչեց իր մոտ և, ձեռքով ցույց տալով դուռը, կարճ, բայց հրամայական տոնով ասաց թուրքին.

— Հեռացի՛ր։

Սեղանների մոտ նստածները նոր միայն նկատեցին Հայդարին և բղավեցին.

— Հայդարը վերադարձել է։

Շատերը տեղներից վեր թռան և ուրախ շրջապատեցին նրան։ Գուսանը մի քիչ սպասեց և նորից դիմեց մռայլորեն փսսացող թուրքին.

— Գնա՛։

Այդ ժամանակ բոլոր հաճախորդները անհամբերությամբ բղավեցին.

— Դե գնա է՛լի, գնա՛ այստեղից։

Հաստ վաճառականը, գլուխը թաքցնելով ուսերի մեջ, ամբողջ սրճարանի բարձրաձայն հռհռոցի տակ երկչոտ, մանր քայլերով գնաց դեպի դուռը։

Հետո Հայդարը շուռ եկավ դեպի սրճարանատերը և ասաց.

— Տես հա՛, չհամարձակվես երեխային նեղացնել։

Սրճարանատերը հնազանդվեց։ Նրան ձեռնտու էր երաժշտի հետ բարի դրացիական հարաբերություն ունենալը։ Թափառաշրջիկ գուսանի երգն ու նվագը հրապուրանքի լավ միջոց էին հանդիսանում սրճարանի հաճախորդների համար։

Այդ երեկո Հայդարը երկար նվագեց և երգեց, չթողնելով, որ Հովհաննեսը մոտից հեռանա։



Երաժիշտը սկսեց ամեն օր հաճախել սրճարան։ Նա այնտեղ էր գալիս շատ ավելի շուտ, քան հավաքվում էին մշտական հաճախորդները։ Հայդարը Հովհաննեսին ցույց էր տալիս, թե ինչպես բռնել ջութակը, հենելով այն ձախ ծնկանը, որպեսզի հնարավոր լինի միաժամանակ և՛ նվագել, և՛ երգել։ Մի քանի օր հետո երեխան յաջողությամբ սովորեց կրկնել առանձին երգեր։

Այժմ սրճարանի հաճախորդները քիչ էին բղավում. «Այ՛ տղա, այստեղ արի»։ Երբ Հայդարը հանգստանում էր, նրանք խնդրում էին. «Օնի՛կ, Վանյու՜շա, նվագի՛ր մեզ համար»։

Եվ Հովհաննեսը նվագում էր։ Այդ մասին շատ

*) Սրճարանատեր, լցրու՛. (թուրքերեն)։

շուտով իմացան փոքր քաղաքում, և սկսեցին սրճարան գալ նրանք, ովքեր առաջ նույնիսկ ոչ մի անգամ չէին նայել այդ կողմը։

Սրճարանատերը գոհ էր։ Խորամանկ հույնը Հովհաննեսին էլ ավելի հաճախակի էր ազատում հաճախորդների ծխամորճները վառելու և նրանց մատուցելու պարտականություններից։ Այժմ նա ինքն էր երեխային նստեցնում Հայդարի կողքին և բարձրաձայն գովում զուռնային։

— Հայդա՛ր, դու հանգստացիր և գինի խմիր, իսկ երեխան թող մի քիչ նվագի։

Հովհաննեսը երջանիկ էր։ Այժմ նրա ավելի սուր լսողությունը նրբորեն որսում էր ծովի ալեբախությունը, ուշ երեկոյան փողոցով անցնողների քայլերի ռիթմը, մոր նուրբ ու տխուր ձայնի ելևէջները։ Այդ բոլորը այժմ հնչում էր ինչպես երաժշտություն։

Հովհաննեսը բոլորից գաղտնի երազում էր սեփական ջութակ ունենալու մասին։ Նա նույնիսկ համարձակ կերպով չէր խոստովանում Հայդարին իր երազանքի մասին։

Մի անգամ երեկոյան, երբ երեխան նվագում էր սրճարանում, իսկ Հայդարը հանգստանում էր, ներս մտավ մի նոր հաճախորդ։ Նա նստեց անկյունում և խնդրեց ամենաթանկարժեք գինին։ Անծանոթը խմում էր գինին և մեծ բավականությամբ լսում փոքրիկ ջութակահարին, աչքը չհեռացնելով նրանից։

Նրա դեմքը Հովհաննեսին ծանոթ թվաց։ Եվ երեխան հանկարծ հիշեց ամառվա այն շոգ օրը, երբ նավաստիները իրեն բարձրացրին նավի վրա, հիշեց երիտասարդ հույն-կապիտանին, որը Հովհաննեսի գրպանները լցրեց ընկույզով, քիշմիշով ու թզով։ Եվ հիմա Հովհաննեսը ճանաչեց այդ կապիտանին։

Կապիտանը սկսեց ամեն երեկո սրճարան գալ։ Նրա սեղանի մոտ նստում էին տեղական հույները, գլխավորապես երիտասարդները։ Հրճվանքը աչքերում նրանք որսում էին ծովայինի յուրաքանչյուր բառը։ Մնացած հաճախորդները՝ կամաց-կամաց մոտենում էին հույների հոծ խմբին և սկսում էին ականջ դնել խոսակցությանը։

Երրորդ օրը երեկոյան, երբ կապիտանը եկավ սրճարան, նրան արդեն սպասում էին մի քանի տասնյակ մարդիկ։

Հինգ տարի էր անցել այն ժամանակվանից, երբ Հունաստանի ժողովուրդը ոտքի ելավ թուրքական ստրկացնողների դեմ։ Թեոդոսիայում լուրեր տարածվեցին հույն ապստամբների կատարած անօրինակ խիզախությունների մասին։ Փոքրիկ քաղաքում ապրում էին բավական թվով հույներ։ Ինչ-որ մեկը լուր տարածեց, որ կապիտանը ապստամբության մասնակից է։

Այդ երեկոյան սրճարանում բացակայում էին միայն թուրք առևտրականները։ Նրանք վախենում էին, որ իրենց իսկ ներկայությամբ առաջանալու ոչ միայն հույների, այլև ռուսների ու հայերի մեջ, որոնք համակրում էին թուրքական բռնակալների դեմ ոտքի ելած դավանակից հույներին։ Ծերունիները դեռևս հիշում էին Թեոդոսիայում գոյություն ունեցող թուրքական տիրապետության, թուրքական արյունահեղ ռեժիմի մռայլ ժամանակները։

Անա թե ինչու կապիտանին միաժամանակ փրփրամունքով էին լսում հույները, ռուսները և հայերը։

Կապիտանը մանրամասն կերպով պատմեց հրապարակների, անվեհեր կլեֆտների *) մարտական ջոկատների մասին, որոնց մեջ նա անց էր կացրել երկու տարի։

Երեկոն վերջացավ շատ աշխույժ։ Հանուն այդպիսի հարգելի հասարակության, սրճարանի տերը նկուղից Կիպրոսի կակական թունդ գինի բերեց, որը նա վաղուց էր պահում ինչ-որ հատուկ հանդիսավոր դեպքի համար։

Խմում էին հանուն մարտնչող Հունաստանի, հանուն նրա քաջ ժողովրդի, հանուն ռուսների և հույների դաշինքի։

Գինին խմելուց և ջերմ կենացներից հետո բոլորն էլ ցանկացան երգ և երաժշտություն լսել։ Միայն այդ ժամանակ նկատեցին, որ Հայդարը այսօր չի եկել իրենց մոտ։

— Այ քեզ անհարմար բան, վշտացավ սրճարանատերը։ — Մի՞թե հիվանդացել է։ Ջութակ լիներ, Հովհաննեսն էլ մեզ համար կնվագեր...

*) Ազատ գյուղացիներ.

— Ջութակ կա,— հանկարծ հայտարարեց կապիտանը։

Նա վեր բարձրացրեց իր հետ բերած նեղլիկ փաթեթը և դրեց կողքին։ Տաք-տաք խոսակցությամբ տարվածներից ոչ ոք չնկատեց այն։ Կապիտանը քաթանե պարկից հանեց ջութակի պատյանը, բացեց և Հովհաննեսին մեկնեց ջութակն ու կնոտոցը։

Հովհաննեսը կյանքում առաջին անգամն էր ինքնուրույն նվագում։ Նրա հուզմունքն էլ ավելի սաստկացել էր այդ անսովոր երեկոյի պատճառով։

Նա շատ բան չհասկացավ այն ամենից, ինչ պատմեց կապիտանը և ինչի մասին խոսեցին մնացածները։ Բայց նա առաջին անգամ էր տեսնում, որ սրճարանում այդքան երկար խոսեին։ Հետո լռեցին։ Եվ այսօր նրանք այնպես չէին խմում, ինչպես սովորաբար, չէին կռվում, նախատական խոսքեր չէին ասում։

Տղային հատկապես զարմացրեց, որ այնպիսի ծանրակշիռ պարոն, ինչպիսին գավառային ուսումնարանի նախկին վերակացուն է, սրճարան եկավ ու սկսեց բանաստեղծություններ կարդալ։

Հովհաննեսը երկար նվագեց, բայց բոլորովին հոգնածություն չզգաց։ Ջութակը սքանչելի էր, և նրա վրա այնքան հաճելի էր նվագելը։

Սրճարանի հաճախորդները կախարդված լսում էին այդ նիհար, գունատ տղայի ոգեշնչող նվագը։

Սրճարանատերը ավելացրեց մոմերի քանակը։ Սրճարանը ավելի լուսավորվեց։

Կես գիշերից մի քիչ առաջ կապիտանը սկսեց բոլորին հրաժեշտ տալ։ Առավոտյան նրա նավը պետք է հեռանար Թեոդոսիայից։

Նա մոտեցավ Հովհաննեսին, որը շարունակում էր նստած մնալ ցածր աթոռին՝ ջութակը ծնկներին դրած։ Ուսերից բռնելով, կապիտանը զգուշությամբ գրկեց տղային, համբուրեց և ասաց.

— Այդ ջութակը երկար ժամանակ է ինձ մոտ։ Առաջ այն պատկանում էր իմ ընկերոջը, որի հետ միասին մեծացել ենք։ Նա շատ լավ ջութակահար էր, բայց անժամանակ մեռավ։ Մեռնելուց առաջ նա ինձ տվեց իր ջութակը և խնդրեց նվիրել մի այնպիսի տղայի, որը կարողանա իրենից լավ նվագել։ Դու դեռևս բոլորովին փոքրիկ ես, բայց նվագում ես շատ լավ, դրա համար էլ քեզ եմ նվիրում այս ջութակը։ Կարծում եմ, որ եթե ընկերս կենդանի լիներ, նա ինքը քեզ կնվիրեր իր ջութակը։

Հաճախորդները հուզված էին այդպիսի թանկարժեք նվերի համար և բուռն կերպով արտահայտեցին իրենց հիացմունքը։ Միայն Հովհաննեսն էր կանգնել անշարժ։ Նրա գիտակցությունը դժվարությամբ հասավ, որ իր կյանքում տեղի է ունենում հրաշք, իրականացել է ամենաբաղձալի երազանքը։

*Ռուս. թարգմ. Ս. Սահակյան*

# ԳԱՐՆԱՆԱՄՈՒՏ

*Ս. ԽԱՐԱՋՅԱՆ*

Վերջին ձյունն է գիշեր-ցերեկ
Հալվում, բացում գարնան
ուղին,
Գետի ձայնը դարձել է երգ
Ու հասնում է հեռու գյուղին։
Երկինքն այնպես ջինջ է ու
մով,
Ճերմակ ամպն է սահում թեթև,
Մեկը կարծես գարնան ձեռքով
Պարզություն է վերև նետել։
Մեր գետակը հիմա վրդով
Իր սառույցն է կոտրել նորից՝
— Ցորե՛ն բերեք աղալ
հերթով.—
Ջրաղացն է կանչում ձորից։
Եվ սարերը դեռ ձյունաթաց
Հմայում են հովիվ քեռուն,
Փոքրիկ տղա՜ն ուրախացած
Ձնծաղիկ է հանդից բերում։
Ծիտիկն ուրախ երգ է ասում՝
Անց են կացել ձմեռ ու բուք.
Տրտինգ տալով դաշտ է վազում
Կապը կտրած մի չալ հորթուկ։
Ամենուրեք, ամենուրեք
Երգեր, ջրեր ալեծածան,
Դուք, ծաղիկներ, բացվեք,
բուրեք,
Որ զարդարեք հանդ ու կածան։
Եվ դու, մթին անտառ Լոռվա,
Հագիր կանաչ նոր վերարկուդ,
Այնպես արեք, որ չթվա,
Թե տխրել եք ձմռանը ցուրտ։



# ՈՐԲ ԸՆՁԱՌՅՈՒԾՆԵՐԸ

Դ. ՖՐԵՅԲԵՐԳ

Դեռ վերջերս էր, որ տափաստանը լուռ ու խաղաղ տարածված էր տոթակեզ արևի տակ: Թվում էր, թե ոչինչ չի կարող խռովել նրա հանգիստը: Բայց հանկարծ ամեն ինչ հուզվեց, շարժման մեջ մտավ: Անտիլոպների, գոմեշների, ընձուղտների, զեբրերի, կապիկների, ընձառյուծների ու առյուծների հոտերը սլացան դեպի գետը: Այդ կենդանիները, որ սովորաբար մահացու թշնամիներ էին, ոչ մի ուշադրություն չէին դարձնում մեկը մյուսի վրա: Միայն թե շուտ հասնեն փրկարար գետը: Անգամ նրանք, որոնք առանձնապես գետային «վաննաների» սիրահարներ չէին, անգիտակցաբար, մի ինչ-որ խուճապահար սարսափով ջուրն էին նետվում և լողում դեպի մյուս ափը: Բայց մի փոքր անց, նորից լռություն տիրեց: Դա տագնապալից լռություն էր: Գրեթե բոլոր կենդանիները բնազդաբար զգալով վտանգը, արդեն թաքնվել էին ապահով տեղերում: Մնացել էին միայն օձերն ու կարիճները, նրանք էլ արդեն պատրաստվում էին «թիկունքային դիրքեր» գրավել:

Ես իմ ուղեկից նեգրերի հետ վրան էի խփել գետի մոտ, մի ոչ շատ բարձր բլրակի վրա: Հենց այստեղից էլ ես դիտում էի այդ անսպասելի տեղափոխությունը: Ո՞րն էր փախուստի պատճառը: Ես նայում էի այն կողմը, որտեղից վազում էին գազանները և հանկարծ հասկացա՝ տափաստանն այրվում էր: Քամին քշում էր սև ծխի քուլաները: Շուտով ծուխը հասավ և իմ «դիտակետին»:

Տափաստանը կարծես թե մեռել է: Կյանքի ոչ մի նշույլ չի երևում, բայց հանկարծ... այս ի՞նչ բան է. թանձր ծխի միջից դեպի ափ թռավ դեղնադարչնագույն մի հսկայական կենդանի: Հայտնվեց ու էլի անհայտացավ: Եվ ափին մնաց մի փոքրիկ մուգ դարչնագույն բրդյա կծիկ: Երեք րոպե հետո նորից երևաց կատվային այդ հսկա մարմինը, և երկրորդ բրդե կծիկը մնաց ափին ընկած, իսկ քաջասիրտ մայր ընձառյուծը երրորդ անգամ նետվեց կրակի մեջ, որպեսզի փրկի իր ձագուկներին: Այս անգամ նա այլևս չվերադարձավ:

Մենք արագությամբ անցանք հանդիպակաց ափը փոքրիկների մոտ: Առափնյա ավազի վրա մլավելով սողում էին այդ անօգնական էակները: Նրանք իզուր էին սպասում իրենց մոր վերադարձին: Երրորդ ձագուկին բոցերից փրկելու փորձը աղետալի վախճան ունեցավ. մայրը վառվեց:

Մենք երկու փոքրիկներին էլ զգուշությամբ տարանք վրան: Գարեջրի արկղը լցրինք հարդով ու դարձրինք մահճակալ: Փոքրիկները հաճույքով ընկան դրա մեջ և շուտով քնեցին: Այժմ մեզ ուրիշ հարց էր հետաքրքրում՝ ինչպե՞ս կերակրել պստլիկներին:

Նախքան քնեցնելը, մենք փորձեցինք նրանց պահածո կաթ խմեցնել, բայց անհաջող անցավ: Փոքրիկները հոտոտեցին կաթը, խղճալի մլավեցին, բայց չհամարձակվեցին խմել: Հարկավոր էր ծծմայր ճարել: Բայց որտեղի՞ց: Ախր ընձառյուծի մասին խոսք անգամ չէր կարող լինել: Մենք որոշել էինք Օֆիրայի և Գալիմայի համար (այդպես էի անվանել ես եղբորն ու քրոջը) շուն կամ այծ գտնել: Բայց չէ՞ որ այդ արձակ տափաստանում մեզնից բացի ոչ ոք չկար: Համենայնդեպս, ելքը գտանք. որոշեցինք դիմել թմբուկի օգնությանը:

Մենք քաջ գիտեինք, որ այդ «ջունգլիների ռադիոյի» ուժգին հնչյունները աֆրիկյան պարզկա գիշերներին կարող են տարածվել բազմաթիվ մղոնների վրա, և ով էլ որ լսի, կանգ կառնի և ականջ կդնի:

Թմբկահարի յուրահատուկ «Մորզեի այբուբենի» միջոցով ես հաղորդեցի. «Մեզ շտապ պետք է այծ կամ շուն»: Գրեթե երկու ժամ հնչում էին թմբուկի հավասարաչափ զարկերը, մինչև, վերջապես, լսվեց պատասխանը: Տեղացիներից մեկը մեզ այծ առաջարկեց:

Ծծմայրը եկավ ուշ գիշերին: Իսկ առավոտյան անսպասելիորեն մեզ համար բերեցին և երկրորդ ծծմայրը՝ մի անտիլոպ, որին մենք Գոլուճգո անունը տվեցինք: Այժմ մենք միանգամից երկու «մայրիկ» ունեինք: Երբ որբուկներին հանեցին արկղից,

նրանք խղճալի մլավեցին: Բայց այծը երևի չէր ուզում ծծմոր դեր կատարել: Թեև երկու մարդ բռնել էին նրա առջևի և հետևի ոտքերը, նա փռշտացնում էր և հրում փոքրիկներին: Այդ ժամանակ մենք որոշեցինք դիմել անտիլոպի օգնությանը: Սա ավելի հավասարակշիռ դուրս եկավ, և շուտով Գալիման ու Օֆիրին ուրախ չփչփացրին:

Շատ ժամանակ չէր անցել, որ Գոլունգոյի և մեր հոգեզավակների միջև հուզիչ բարեկամություն ստեղծվեց: Անտիլոպը, թվում էր, թե փոքրիկներին ընդունում է իր զավակների տեղ և շրջապատում է նրանց մայրական հոգատարությամբ: Բայց շիմպանզե Կոնգան, որ ապրում էր մեր ճամբարում, անսպասելիորեն նույնպես մայրական իրավունքներ ցուցաբերեց ընձառյուծների նկատմամբ: Եվ ի մեծ վիշտ Գոլունգոյի, Կոնգան շուտով դարձավ դայակ:

Ամեն իրիկուն Կոնգան կարգի էր բերում մանկական մահճակալը և եղբորն ու քրոջը պառկեցնում էր քնելու: Այդ բոլորի համար նա ինձնից ստանում էր մի կտոր սպիտակ հաց:

Մի անգամ մեր փոքրիկները կորան: Բոլորս իրար անցանք: Գոլունգոն ու Կոնգան տենդայնորեն փնտրում էին իրենց սիրելիներին:

Վերջապես շիմպանզեն փախստականներին գտավ մի փոսի մեջ, իրար քիփ կպած՝ քնած: Բարի դայակը ճամբար վերադարձավ Գալիմային ու Օֆիրիին շալակած:

Փոքրիկ ընձառյուծները հրաշալի զվարճանում էին: Շուտով նրանք սկսեցին պտտել շրջակայքը, ըստ որում Կոնգան անդավաճան կերպով ուղեկցում էր նրանց և պաշտպանում:

Շիմպանզեները շատ շուտ են զգում ամեն տեսակ վտանգներ, դրա համար էլ որբուկներն ավելի լավ հսկող չէին էլ ցանկանա: Որքան մեծանում էին Գալիման և Օֆիրին, այնքան ավելի էր ամրանում նրանց բարեկամությունը Կոնգայի հետ, իսկ խեղճ Գոլունգոն ակնհայտորեն ետին պլան էր մղվում:

Մեր ճամբարում, վրանից մինչև մոտակա ծառը երեք մետր բարձրության վրա մետաղալար էր քաշ-



Նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

ված, որի վրա մսի կտորներ էին չորանում: Մի անգամ երթից վերադառնալիս՝ ճամբարից մի քանի հարյուր մետր հեռավորության վրա ես հեռադիտակով նկատեցի մետաղալարից կախված մի «ակրոբատի»: Դա շիմպանզե Կոնգան էր: Խորամանկ կապիկը իր գողային հատկությունները չէր ցուցաբերում իմ ճամբարում եղած ժամանակ: Բայց բավական էր ես մի փոքր հեռանայի ճամբարից, որ նա սկսեր միս գողանալ: Բայց այդ ո՞ր ժամանակներից էր, որ շիմպանզեները սկսել են միս ուտել: Այդ բոլորը պարզվեց շատ հասարակ ձևով: Կոնգան միսը գողանում էր ոչ թե իր համար, այլ սանիկների: Այդպիսով Գալիման ու Օֆիրին սովորեցին միս ուտել, մի բան, որ մտքովս էլ չէր անցնում: Շուտով նրանք սկսեցին լիովին արհամարհել Գոլունգոյի կաթը, որից հետո անտիլոպը վերջնականապես «պաշտոնաթող» եղավ:

Այժմ ընձառյուծները բացի պահածո կաթով պատրաստված մի թաս վարսակի շիլայից, խոհարարից սկսեցին ստանալ նաև մանրացրած միս:

Մի ննջարան—արկղի փոխարեն հայտնվեցին երկուսը. գազաններն այնպես մեծացել էին, որ

այլևս մեկի մեջ չէին տեղավորվում: Կոնգան այլևս գազաններին չէր պառկեցնում քնելու և դրանից շատ ընկճված էր: Այնպես հուզիչ էր տեսնել, թե ինչպես է նա ամեն օր մաքրում նրանց բնակարան-արկղները: Նա տխուր նստում էր արկղի կողքին այնքան, մինչև այդ գիշատիչներն առանց որևէ ուշադրության դարձնելու իրենց դայակի վրա, պառկում էին քնելու: Խեղճ Կոնգան ոչ մի կերպ չէր կարողանում հասկանալ, որ իր սիրելիները արդեն մեծացել են: Թեև նա արդեն մի անգամ չէ, որ առիթ էր ունեցել նրանց սուր ճանկերի հետ ծանոթանալու:

Երբ սկսվեցին անձրևները, բոլոր գետերը հորդացան, իսկ ցամաքում ահավոր փոթորիկներ սկսվեցին, ես իմ երեք սիրելիների հետ ճանապարհ ընկա դեպի հեռավոր հայրենիք: Փոքրիկ շոգենավի վրա, որով մենք լողում էինք դեպի տուն, ես ստիպված եղա շատ անախորժություններ կրել, թեև անձնակազմին արգելված էր զբաղվել ընձառյուծներով: Մանավանդ, որ ամեն օր «կռիվներ» էին ծագում: Իրենց սուր ճանկերով գազանները մի գլուխ պատառոտում էին նավաստիների շալվարները: Իսկ մի անգամ Օֆիրին այնպես էր ճանկել իրեն փաղաքշող մի տիկնոջ զգեստը, որ ես ստիպված էի բացել նրա ճանկերը առանձին-առանձին:

Ամենից խոհեմ էր պահում իրեն Կոնգան, որ դեռևս շատ կապված էր իր սաներին և աչքը չէր հեռացնում նրանցից: Բայց նա այդ երկու գիշատիչ կատուների հետ այլևս ուրախություն չէր գտնի: Եվրոպայում իմ առույգ ու առողջ սաներին հանձնեցի մի մեծ կենդանաբանական այգու: Երբ ես այցելում էի նրանց, գազանները ուրախությունից գժվում էին: Առանձնապես շատ էր ուրախանում Կոնգան: Գալիման նույնպես բուռն էր ողջունում: Միայն Օֆիրին էր ավելի զուսպ պահում իրեն:

Ահա արդեն քանի տարի է, ես նրանց չեմ տեսել, բայց լսել եմ, որ իմ սաներն իրենց հրաշալի են զգում: Արդյոք կճանաչեն ինձ իմ որբուկները և նրանց մնացած «բարի դայակը»:

*Թարգմ. Ա. ՊԻՆԿԱՍՅԱՆ*

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

### Մ. ԿՈՐՅՈՒՆ

*Մետաղ է, երկաթ չի,*
*Հեղուկ է, կաթ չի: (սնդիկը)*

*Կիսալուսին ոլորած,*
*Աստղեր տակին բոլորած: (մզկիթը [illegible])*

*Թեև մեծ չէ մոծակից,*
*Սակայն ժայռեր կծակի: ([illegible])*

*Ձյան սպիտակ օրորոցից,*
*Ինչպես մանուկն իր մոր գրկից,*
*Ո՞ր ծաղիկն է մեզ հյուր գալիս,*
*Գարնան գալը իմաց տալիս: ([illegible]).*



## ԱՄՍԱԳՐԻ ԲԱՐԵԿԱՄԸ

«Պիոներ» ամսագիրը շատ բարեկամներ ունի: Նրանցից մեկն էլ Գրիշա Խաչատրյանն է: Ի՞նչ է անում նա: Գրո՞ւմ է ամսագրում՝ ո՛չ: Նկարո՞ւմ է՝ ո՛չ: Գուցե հանելուկներ է հնարում կամ խաչբառեր կազմում՝ դարձյալ ոչ:

Հապա ի՞նչ է անում:

Նա տարածում է «Պիոներ» ամսագիրը, բաժանորդագրում: Թալինի շրջանի բոլոր դպրոցներում երեխաները ճանաչում են Խաչատրյանին և, երբ նա դպրոց է գալիս, բոլորը շրջապատում են նրան, հարցնում ամսագրի մասին: Եվ ինչո՞ւ միայն «Պիոներ» ամսագրի մասին: Չէ՞ որ Գրիշա Խաչատրյանը զբաղվում է բոլոր թերթերի և ամսագրերի բաժանորդագրության հարցով: Նա մամուլի Թալինի շրջանային լիազորն է: Արդեն երեսուն տարի է նա այդ գործն է կատարում և միշտ արժանացել է խրախուսանքի: Երկարամյա անբասիր աշխատանքի համար նա պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով:

Այս տարի «Պիոներ» ամսագրի լավ բարեկամ Գրիշա Խաչատրյանը խմբագրության կողմից պարգևատրվեց ձեռքի ժամացույցով:



# ԱՌԱՋԻ՛Ն ԴԱՍԸ

*Վ. ՏԱԼՅԱՆ*

Ճնճղուկը դաս էր տալիս
Պստիկ-մստիկ իր ճտին.
Մեկ թռչում վեր, պտույտ գալիս,
Մեկ իջնում էր նա գետին։
Թափ էր տալիս թևերն ուրախ,
Ճտին ասում.— Ի՛մ կուկու,
Ես այստեղ եմ, թռիր անվախ,
Մի թըռ միայն՝ մե՛կ, երկու՛...
Մայրը բնից ճչում էր.— Վա՜յ,
Կընկնի հանկարծ, չի կարող։—
Ճուտիկն էլ թե՝ մայրիկ, տես, ա՛յ...
Թռչեմ, է՛լի... մի քիչ թող...
Թռան եկան մեծերն իսկույն.
— Լա՜վ, կթռչի, մի դողա։
Թը՜ռ՝ այս ծառին, թը՜ռ՝ դեպի տուն...
Թող ծլվլա ու խաղա։
— Բա որ հանկարծ թևը ծռի՞...
Փոքր է, ախր, մի մատ ճուտ...
Հենց ասում եք՝ թռի՛ր, թռի՛ր...

Հայրը կանչեց. Թող գա՛, շուտ։
Եվ ճուտիկը հանկարծ պոկվեց,
Զեփյուռի հետ խաղ արեց,
Կանգնեց ճյուղին, դես-դեն ճոճվեց,
Իջավ կտրին ու պարեց։
Հետո փոքրիկն այդ աներկյուղ
Թռավ ծածուկ, տեղ գտավ՝
Շվաքի մեջ բարակ մի ճյուղ,
Եվ սաղարթում պահ մտավ։
Մայրը փնտրեց՝ նա ծլվլաց,
Հայրը կանչեց ծիծաղեց.
Ծիվ-ծի՜վ.. ծի՜վ-ծի՜վ... մեկ էլ հանկարծ
Թռավ ընկավ բույնն իրենց։
Ու մայրիկին ողջունեց. Ճի՛կ...
Ես այստեղ եմ, ջա՜ն-ջա՜ն-ջա՜ն...
Մայրը ասաց. Իմ լա՜վ ճուտիկ,
Հայրն էլ՝ կեցցե՛ իմ տղան։

*Նկ. ԺՈՐԺ ՎԱՐԴԱՆՅԱՆԻ*

# ԱՄԻՐՏՈՎԼԱԹ ԱՄԱՍԻԱՑԻ

Շատ ծանր է, երբ մարդ իր ամբողջ կյանքը նվիրում է իր հայրենի երկրին, նրա համար մաքառում, ստեղծագործում, սակայն ոչ մի հնարավորություն չունենալով գոնե մի անգամ լինել իր հարազատ հայրենիքում, միշտ մնում է նրան կարոտ: Այդպիսին է եղել 15-րդ դարի հայ մեծագույն բժիշկ և գիտնական Ամիրտովլաթ Ամասիացու կյանքը:

Նրա ծննդյան ստույգ տարեթիվը մինչև հիմա էլ հայտնի չէ, բայց ստեղծագործություններից երևում է, որ ծնվել է մոտավորապես 1414—19 թվականներին, Փոքր Ասիայի Եշիլրմագ գետի վրա գտնվող Ամասիա քաղաքում: Իր ծննդավայրում հայերեն, թուրքերեն և արաբերեն գրել-կարդալ սովորելուց հետո, նա երկար ու տանջալի ճանապարհորդություն է կատարում, որի ժամանակ սովորում է բժշկություն և դեղագործություն:

15-րդ դարի կեսերին, սուլթան Մահմեդ 2-րդի օրով, օսմանյան պետությունը զորեղացավ, ամրապնդվեց: Ահա այդ ժամանակ էր, որ բժշկության մեջ բացահայտվեց Ամիրտովլաթի մեծ տաղանդը: Նա դարձավ թուրքական սուլթանի պալատական գլխավոր վիրաբույժը:

Ամիրտովլաթը Մահմեդ սուլթանի ամենասիրելի և ամենահեղինակավոր բժիշկն էր: Սակայն ո՞ր պալատում և ո՞ր թագավորի մոտ խելոք, հնարամիտ և իմաստուն մարդկանց կյանքը խաղաղ է անցել: Բազմաթիվ դատարկագլուխ և անշնորհք բանսարկուներին ձեռնտու չէր սուլթանի հարգանքն ու պաշտպանությունը դեպի մեծ բժիշկը: Եվ ահա նրանց հաջողվում է սուլթանի մտքերը պղտորել, թշնամացնել նրան հայ բժշկի հետ: Մահմեդ 2-րդը բավականացավ միայն նրանով, որ մեծ բժշկին հեռացրեց իր արքունիքից:



Նորից թափառական ու ծանր կյանք է կրում նա, բայց որոշ ժամանակ հետո փոխվում է դրությունը, և Ամիրտովլաթը իր բարեկամների ու աշակերտների միջոցով կրկին վերադառնում է Կոստանդնապոլիս, որտեղ զբաղվում է իր սիրած գիտությամբ՝ բժշկությամբ:

Ամիրտովլաթը գրել է երեք մեծ և ստվարահատոր գիրք՝ «Օգուտ բժշկության», «Ախրապատին» և «Անգիտաց անպետ» (այսինքն՝ տգետ մարդկանց համար ոչ պիտանի, անպետք):

Լավ ծանոթ լինելով հունական, լատինական բժիշկների գործերին և քաջ իմանալով արաբական բժշկությունը, նա ստեղծել է հայերեն լեզվով այս թանկարժեք գրքերը, որոնք երկար տարիներ հանդիսացել են հայ բժշկասեր մարդկանց սեղանի զարդը:

Ամիրտովլաթը, չնայած իր համբավին, բացառիկ համեստ մարդ էր և խիստ էր ինչպես իր, այնպես էլ աշակերտների նկատմամբ:

Նրա «Անգիտաց անպետ» գիրքն սկսվում է հետևյալ ոտանավորով.

«Եղիր հետևող իմաստության հետ
Եթե չուսանիս՝ բժիշկ ես անգետ:
Լինիս դու գիտուն՝ արա բանիս պետ.
Գրքցս անունն է Անգիտաց անպետ»:

Ամիրտովլաթ Ամասիացին ոչ մի անգամ չի եղել Հայաստանում, չի ապրել իր մայր հողի վրա, չի տեսել նրա գեղատեսիլ վայրերը, բայց լինելով մեծ հայրենասեր, նա իր բոլոր գործերը գրել է հայերեն և իր ամբողջ կյանքը նվիրել է հայ բժշկության զարգացմանը:

Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ
(Բժիշկ)



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

## ԿԱՐԻՐ ԻՆՔԴ

Ո՞վ է կարել այն հագուստները, որ դուք հագնում եք. շրջազգեստը, կոֆտան, դահուկային կոստյումը: Կարված գնել եք խանութի՞ց, թե՞ մայրիկն է կարել: Իսկ դուք կարո՞ղ եք ինքներդ կարել: Երևի դեռ չեք փորձել, թե՞ փորձելն անգամ սարսափեցնում է ձեզ: Ճիշտ է, չէ՞: Եղեք համարձակ, և ամեն ինչ կստացվի:

Տեսեք, թե որքան գեղեցիկ և նորաձև շորեր պետք է առաջարկենք ձեզ կարելու. ձմեռային սարաֆան, յուբկա, կարդարուն գոգնոց: Կարեք հին շորերից՝ մայրիկի այն շրջազգեստից ու յուբկայից, որ վաղուց արդեն նա չի հագնում, և կամ ձեր անցյալ տարվա համազգեստից...

Սարաֆանը (նկ. № 1) լավ է կարել բրդյա կամ խիտ գործված բամբակե գործվածքից. իհարկե, գործվածքը պետք է լինի ոչ թե բազմագույն, այլ միագույն կամ վանդակավոր:

Սարաֆանի լիֆը (վերևի մասը) առջևից պետք է ունենա չկարված ծալքեր, ներսից կթնած, իսկ հետևից՝ կարված ծալքեր: Յուբկան հավաքված՝ փոթավոր, առջևից երկու կարով, իսկ հետևից, կենտրոնում՝ մեկ կարով:

№ 2 նկարում դուք տեսնում եք միագույն գործվածքից


Նկ. 1 Նկ. 2





Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—41—83, 2—59—06:*

*ՎՖ 07096. Պատվեր 126: Տպաքանակ՝ 9000: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 9/III 1960 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91:*

Գինը 2 ռ.

կարված գեղեցիկ յուբկա: Այն կարված է երկու միահավասար կտորներից՝ գոտկատեղում խիտ հավաքված: Յուբկան ունի կոճկվող մեծ գրպաններ, որոնք երկու կողմից երիզվում են դեկորատիվ ժապավենաթելերով: (Գծագրի վրա դրանք նշանակված են կետավոր գծերով):

Քաթանից գոգնոցը (նկ № 3) զարդարված է մի քանի շարք դեկորատիվ ժապավենաթելերով: Իսկ թե ինչպե՞ս պետք է դրանք դասավորել՝ արդեն նկարի վրա երևում է:

Սարաֆանի, յուբկայի և գոգնոցի համար մենք տալիս ենք ձևվածքներ փոքրացված 1:10 հարաբերությամբ: Մեր գծագրերով դուք կարող եք կըտրել ձևվածքը իսկական մեծությամբ (թվերը գծագրերի վրա նշանակում են սանտիմետրեր), սկզբում կտրեցեք թղթից, հետո չափեք ձեզ վրա:

Բոլոր ձևվածքները տրված են առանց կարաբաժնի, 36 չափսի համար, այսինքն՝ 12—13 տարեկան աղջկա վրայով:




Նկ. 3

